# Արդյո՞ք Հիսուսը Աստված է Աստվածաշունչը Ասում է ՈՉ

[ Հայերեն - Armenian – أرميني ]

**Հ ե ղ . Շաբիր Ալլի**

Թարգմանությունը:

**EUROPEAN ISLAMIC RESEARCH CENTER (EIRC)**

& Աննա Ռ. Հակոբ

Ստուգող հանձնաժողով:

Աբու Առամ

# هل عيسى عليه السلام إله؟ الإنجيل يجيب لا!

شبير علي

ترجمة:

المركز الأوروبي للدراسات الإسلامية

& آنا ر. يعقوب

مراجعة: أبو آرام

# ԱԼԼԱՀԻ ԱՆՈՒՆՈՎ ԱՄԵՆԱՈՂՈՐՄԱԾ ԱՄԵՆԱԳԹԱՍԻՐՏ

Հեղինակ.

Շաբիր Ալլին հանդիսանում է Իսլամական Տեղեկատվության և Դավա միջազգային կենտրոնի տնօրենը, որը հիմնվել է Տորոնտոյում, Կանադա: Նա արտագաղթել է իր ծննդավայր Գայանայից 1978 թվականին և շարունակել է ձեռք բերել հմտություններ, որոնք անհրաժեշտ են ներկայացնելու Իսլամի համապարփակ ուղերձը տարբեր և առանց հավատքի մարդկանց: Մասնավորապես, Աստվածաշնչի նրա գիտական գիտելիքները զուգորդվում է երկխոսությունների և բանավեճերի հաճելի մոտեցմամբ,որոնք նրան հաղթանակի եզրեր են տվել շատ հանրային հանդիպումների ժամանակ: Նա Իսլամը ներկայացրել է բազմաթիվ երկխոսությունների, բանավեճերի և հանրային դասախոսությունների ընթացքում, որոնք տեղի են ունեցել Անգլիայում, Կանադայում, Ամն-ում և Գայանայում: Նա վարում է երկու ռադիո հաղորդումներ, որոնք հեռարձակվում են Տորոնտոյից և էդմոնթից դուրս: Նա հեռակա ուսուցում է ստանում Սաղբուրիի Լաուենթյան Համալսարանում: Նա շատ է ճանապարհորդում, որպեսզի տարբեր համալսարանական հաստատություններում դասախոսություններ տա Իսլամի և համեմատական կրոնների մասին:

# ԱՐԴՅՈ՞Ք ՀԻՍՈՒՍԸ ԱՍՏՎԱԾ Է: ԱՍՏՎԱԾԱՇՈՒՆՉԸ ԱՍՈՒՄ Է «ՈՉ»

## ՄԱՍ 1:

## Աստվածաշնչի որ մի հեղինակ չի հավատում, որ Հիսուսը Աստված է:

Եվ Քրիստոնյաները և Մահմեդականները Հիսուսին հավատում, սիրում և պատվում են: Ամեն դեպքում, նրանք տարանջատվում են նրա աստվածայնության հարցի շուրջ: Բարեբախտաբար, այս տարբերությունը լուծելի է, եթե մենք հղենք հարցը և Աստվածաշնչին և Ղուրանին, որովհետև և մեկը և մյուսը ուսուցանում են, որ Հիսուսը Աստված չէ:

Բոլորին բավական պարզ է, որ Ղուրանը ժխտում է Հիսուսի աստվածայնությունը, այսպիսով մենք ժամանակի կարիք ենք զգում, որպեսզի բացատրենք դա: Մյուս կողմից, շատ մարդիկ սխալ են ընկալում Աստվածաշունչը; Նրանք հավատում են, որ Հիսուսի Աստված լինելու հավատքը այնքան տարածված է, որ պետք է սկիզբ առնի Աստվածաշնչից: Այս և հետագա վեց ուղերձների մեջ մենք հստակորեն ցույց կտանք, որ Աստվածաշունչը չի ուսուցանում այդ: Աստվածաշունչը հստակ ուսուցանում է, որ Հիսուսը Աստված չէ: Աստվածաշնչի մեջ Աստվածը միշտ հանդիսանում է մեկ այլ կերպար, ոչ թե Հիսուսը: Ոմանք կարող են ասել, որ Հիսուսը խոսել կամ գործել է որևէ արարք, երկրի վրա, որը և ապացուցում է նրա Աստված լինելու փաստը: Մենք ցույց կտանք, որ աշակերտները երբեք չեն եկել այն եզրահանգման, որ

Հիսուսը Աստված է: Եվ այս մարդիկ ապրել և քայլել են Հիսուսի հետ և ուստի առաջնահերթ տեղյակ են, թե նա ինչ է ասել և գործել:

Բացի այդ, Աստվածաշնչի Առաքյալների Գործքը մեզ ասում է, որ Սուրբ Հոգին առաջնորդում էր աշակերտներին: Եթե Հիսուսը Աստված էր, իրոք նրանք պետք է տեղյակ լինեին:Սակայն նրանք տեղյակ չէին: Նրանք շարունակում էին երկրպագել մեկ ճշմարիտ Աստծո, ում երկրպագում էին Աբրահամը, Մովսեսը և Հիսուսը: (տես. Գործք գլուխ 3 տարբերակ 13)

Աստվածաշնչի բոլոր հեղինակները հավատում են, որ Հիսուսը Աստված չէր: Նրա Աստված լինելու գաղափարը Քրիստոնեական հավատքի մի մաս է դարձել Աստվածաշնչի գրառումից հետո: Եվ դարեր անց դարձել է Քրիստոնյաների հավատքի մասը:

Առաջին Կտակարանների հեղինակներ Մատթեոսը, Մարկոսը և Ղուկասը, հավատում են, որ Հիսուսը Աստված չէր (տես Մարկոս 10:18; Մատթեոս 19:17 և Ղուկաս 18:19): Նրանք հավատում են, որ նա Աստծո որդին էր արդար անհատի իմաստով: Նմանապես, շատերին կոչել են Աստծո որդիներ: (Մատթեոս գլուխ 23, տարբերակ 1,9)

Պողոսը, որին վերագրում են Աստվածաշնչի տասներեք կամ տասնչորս նամակները, նույնպես հավատում էր, որ Հիսուսը Աստված չէ: Պողոսի համար Աստված առաջինը արարեց Հիսուսին, այնուհետ որպես գործոն կիրառելով, արարեց մնացյալ արարածներին (տես Կողոսացիներ գլուխ 1, տարբերակ 15 և Կորընթացիներ Ա, գլուխ 8

տարբերակ 6): Նմանատիպ գաղափարներ կարելի է գտնել Հրեաներին ուղղված նամակների , ինչպես նաև Կտակարանի և Հովհաննեսի նամակների մեջ, որոնք գրառվել են Հիսուսից յոթանասուն տարի անց: Ամեն դեպքում, այս բոլոր գրառումների մեջ, Հիսուսը հանդիսանում է Աստծո արարածը և ուստի, հավերժ ենթակա է Աստծուն (տես Կորընթացիներ Ա 15, տարբերակ 28)

Այժմ, քանի որ Պողոսը, Հովհաննեսը և իրեանների հեղինակները հավատում էին, որ Հիսուսը Աստծո առաջին արարածն է, որոշ բաներ, որոնք նրանք գրառել են պարզորեն ցույց են տալիս, որ Հիսուսը հանդիսանում էր նախագոյություն ունեցող հզոր էակ: Հաճախ թյուիմացության արդյունքում, այն նշանակում է, նրա Աստված լինելու հնարավորությունը: Սակայն ասել, որ Հիսուսը Աստված էր, նշանակում է դեմ գնալ հեղինակների գրառումներին: Չնայած այս հեղինակները ունեին տվյալ ավելի ուշ հավատքը, որ Հիսուսը ավելի հզոր է, քան բոլոր արարածները, նրանք նույնպես հավատում էին, որ նա դեռ ավելի նվազ է ,քան Աստվածը: Փաստացի, Հովհաննեսը մեջ է բերում Հիսուսին, ով ասել է. Հայրը ավելի հզոր է, քան Ես (Հովհաննես գլուխ 14, տարբերակ 28) Եվ Պողոսը հայտնում է, որ յուրաքանչյուր կնոջ գլուխը իր ամուսինն է, յուրաքանչյուր տղամարդու գլուխը Քրիստոսը և Քրիստոսի գլուխը Աստվածը: (Կորընթացիներ Ա գլուխ 11 տարբերակ 3)

Ուստի, տվյալ գրառումների մեջ որևէ բան գտնել և հայտնել, որ նրանք ուսուցանում են այն, որ Հիսուսը

հանդիսանում է Աստված, նշանակում է թյուր կիրառել և թյուր մեջբերել այն, ինչ տվյալ հեղինակները ասում են: Այն ինչ նրանք գրում են, պետք է ընկալել ըստ իրենց հավատքի, որ Հիսուսը հանդիսանում է Աստծո արարած , ինչպես որ մինչ այդ հստակորեն նշել են:

Այսպիսով, մենք տեսնում ենք, որ որոշ ուշ ժամանակաշրջանի գրողներ բարձր կարծիք են հայտնում Հիսուսի մասին, սակայն Աստվածաշնչի ոչ մի հեղինակ, չի հավատում, որ Հիսուսը հանդիսանում է Աստված: Աստվածաշունչը հստակորեն ուսուցանում է, որ գոյություն ունի միայն մեկ ճշմարիտ Աստված, մեկը, ում երկրպագել է Հիսուսը (տես Հովհաննես գլուխ 17, տարբերակ 3)

Հաջորդ վեց ուղերձների մեջ մենք կարող ենք ավելի խորը ուսումնասիրել Աստվածաշունչը և մեջ բերել առավել շատ խյուղաթյուրված հատվածներ, որպես Հիսուսի աստվածայնության ապացույց: Աստծո օգնությամբ, մենք ցույց կտանք, որ այն ժխտում է այն , ինչ նրանք այդքան հաճախ փորձում են ապացուցել: Թող Աստված մեզ բոլորիս առաջնորդի առ ճշմարտություն, որը ուղղորդում է Դրախտի հավերժ կյանք:

## ՄԱՍ 2.

## ԱՌԱՔՅԱԼՆԵՐԻ ԱՐԱՐՔՆԵՐԻ ԱՊԱՑՈՒՅՑՆԵՐԻՑ

Հիսուսը շատ հրաշքներ է ներկայացրել և անկասկած, շատ հրաշալի բաներ են խոսել նրա մասին: Ոմանք նրա խոսքերը կիրառել են ապացուցելու նրա, Աստված լինելը: Սակայն նրա իրական աշակերտները, ովքեր ապրել և քայլել են նրա հետ և ականատես են եղել նրա խոսքերին և արարքներին, երբեք չեն հանգել հետևյալ եզրակացության: Աստվածաշնչի մեջ, Առաքելոց Գործքը մանրամասնում է աշակերտների գործունեությունը Հիսուսի համբարձումին հաջորդող երեսուն տարիների ընթացքում: Այս ամբողջ ընթացքում, նրանք Հիսուսին երբեք չեն վերաբերվել որպես Աստծո: Նրանք շարունակաբար և հետևողականորեն կիրառում էին Աստված տիտղոսը այլ մեկի, ոչ թե Հիսուսի համար:

Պետրոսը ոտքի կանգնեց տասնմեկ աշակերտների հետ և ամբոխին դիմեց ասելով. «Իսրայելի ժողովուրդ, «լսեք սա. Նազովրեցի Հիսուսը մարդ էր, ում ձեզ ուղարկել է Աստված հրաշքներով, զարմանքներով և նշաններով, որը նրա միջոցով կատարել է Աստված, ինչպես դուք ինքներդ տեղյակ եք»: (Գործք 2:22) Ուստի Աստված էր, ով Հիսուսի միջոցով հրաշքներ էր գործում, որպեսզի համոզի մարդկանց , որ Աստված է ապահովել Հիսուսին: Պետրոսը չի տեսել Հիսուսի Աստված լինելու հրաշքները:

Ի շնորհիվ Պետրոսի Աստծո և Հիսուսի վերաբերմունքի, պարզ է դառնում, որ Հիսուսը Աստված չէ:Քանի որ նա

միշտ Հիսուսից հեռացնում էր Աստծո տիտղոսը: Օրինակ վերցրեք  հետևյալ հղումները.

«Աստված բարձրացրել է այս Հիսուսին…» (Գործք 2:32)

«Աստված այս Հիսուսին դարձրել է Տեր և Քրիստոս» (Գործք 2:36)

Երկու հատվածներում էլ Հիսուսից հեռացրել են Աստծո տիտղոսը: Ինչու՞, եթե Հիսուսը  Աստված է:

Պետրոսի համար, Հիսուսը հանդիսանում էր Աստծո ծառա: Պետրոսը ասաց. «Աստված բարձրացրեց իր ծառային»,

Որտեղ ծառայի տիտղոսը վերաբերվում է Հիսուսին (Գործք 3:26)

Սա ակնհայտ է նախորդ հատվածից, որտեղ Պետրոսը հայտնում է. «Աբրահամի, Իսահակի և Հակոբի Աստվածը, մեր հայրերի Աստվածը փառաբանել է իր ծառա Հիսուսին»: (Գործք 3:13)

Պետրոսը պետք է տեղյակ լիներ, որ Աբրահամը, Իսահակը և Հակոբը երբեք չեն խոսել Աստծո Երրորդության մասին: Նրանք միշտ խոսում են Եհովայի, միակ Աստծո  մասին: Այստեղ, ինչպես Մատթեոս գլուխ 12 :18-20 Հիսուսը հանդիսանում է Եհովայի Ծառան: Մատթեոսը մեզ պատմում է, որ Հիսուսը հանդիսանում է  Եհովայի նույն ծառան, ում մասին խոսում է Եսայի 42:1-ը:Եթե Մատթեոսը և Պետրոսը ճիշտ են, ապա Հիսուսը Եհովան չէ, այլ Եհովայի ծառան:Սա ապացուցում է, որ Հիսուսը Աստված չէ: Հին Կտակարանը պարբերաբար ասում է, որ Եհովան հանդիսանում է միակ Աստվածը, (Եսայի 45:5)  Եթե

Եհովան երեք Աստծո անունն է, ապա Հիսուսը դուրս է մնում է Աստվածայնությունից, քանի որ այդ դեպքում նա պետք է լինի Երրորդական Աստծո ծառան: Մյուս կողմից, եթե Եհովան հանդիսանում է միայն Հոր անունը, ապա Հայրը միայնակ Աստված է, քանի որ Եհովան միայն Աստված է , ուստի Հիսուսը Աստված չէ: Այս կամ այն կերպ Հիսուսը Աստված չէ: Այս առումով ,երկուսն էլ և Պետրոսը և Մատթեոսը ճիշտ էին:

Հիսուսի բոլոր աշակերտները կիսում են այս տեսակետը: Գործք գլուխ 4, տարբերակ 24 մեզ ասում է, որ հավատացյալները աղոթել են Աստծուն ասելով. «Գերիշխան Տեր, դու արարել ես երկինքը և երկիրը և ծովը և ամենը այնտեղ»: Եվ ակնհայտ է, որ մեկը, ում նրանք ուղղում են աղոթքը, Հիսուսը չէ, որովհետև երկու տարբերակ հետո, նրանք անրադառնում են Հիսուսին որպես «քո սուրբ ծառան, Հիսուսը, ում դու օծել ես»: (Գործք գլուխ 4 տարբերակ 27)

Եթե Հիսուսը Աստված լիներ, նրա աշակերտները պետք է որ դա պարզորոշ ասեին: Փոխարենը, նրանք շարունակում էին քարոզել, որ Հիսուսը Աստծո Մեսսիան էր: Գործքը մեզ ասում է. «Օրեցօր, տաճարի սրահներում և տանից տուն, նրանք չեն դադարել ուսուցանել և հայտնել ավետիսը, որ Հիսուսը հանդիսանում է Մեսսիա»: (Գործք գլուխ 5, տարբերակ 42 ) Եբրայերեն Մեսսիա տիտղոսը, որը Հունարեն Քրիստոսն է, հանդիսանում է մարդկային տիտղոս: Այն նշանակում է «Օծված»: (Տես Եսայի գլուխ 45 տարբերակ 1) , որտեղ պարսիկ Կյուրոսին կոչում են Աստծո Մեսսիա:

Եթե Հիսուսը Աստված լիներ , ապա ինչու՞ աշակերտները շարունակաբար պետք է դիմեին նրան այնպիսի մարդկային տիտղոսներով ինչպիսիք էին ծառա, Աստծո մեսսիա և հետևողականորեն կիրառում էին Աստծո տիտղոսը, նրա համար, ով համբարձել է Հիսուսին:

Արդյո՞ք նրանք վախենում էին մարդ արարածից: Ոչ: Նրանք համարձակորեն քարոզում էին ճշմարտությունը վախ չունենալով ոչ բանտարկությունից, ոչ էլ մահից: Երբ նրանք հանդիպեցին իշխանությունների ընդդիմությանը, Պետրոսը հայտնեց. «Մենք պետք է հնազանդվենք Աստծուն, ոչ թե մարդուն: Մեր հայրերի Աստվածը համբարձեց Հիսուսին…» (Գործք 5:29-30)

Արդյո՞ք նրանք բացառում են Սուրբ Հոգին: Ոչ: Նրանց աջակցում է Սուրբ Հոգին (տես Գործք 2:4; 4:8; 5:32)

Նրանք ուղղակի ուսուցանում էին այն, ինչ սովորել էին Հիսուսից – այն որ Հիսուսը Աստված չէ, այլ հակառակը Աստծո ծառա և Մեսսիա:

Ղուրանը հաստատում է, որ Հիսուսը Մեսսիա էր և որ նա հանդիսանում էր Աստծո ծառան (Ղուրան 3:45; 19:30)

## ՄԱՍ 3

## ԱՐԴՅՈ՞Ք ՀԻՍՈՒՍԸ ԱՄԵՆԱԶՈՐ և ԱՄԵՆԱԳԵՏՆ ԷՐ:

Քրիստոնյաները և Մահմեդականները համամիտ են, որ Աստված ամենազոր և ամենագետն է:

Կտակարանները ցույց են տալիս, որ Հիսուսը ամենազորը չէր, քանի որ նա ուներ որոշ սահմանափակումներ: Մարկոսը, իր Կտակարանի մեջ պատմում է մեզ, որ Հիսուսը ի վիճակի չէր որևէ հզոր արարք կատարել իր հայրենի քաղաքում. (գլուխ 6 տարբերակներ 5-6 )Մարկոսը նույնպես մեզ պատմում է, որ երբ Հիսուսը փորձեց բժշկել մի կույրի, առաջին փորձից նա չբժշկվեց և Հիսուսը ստիպված էր փորձել երկրորդ անգամ (տես Մարկոս գլուխ 8 տարբերակ 22-26) Ուստի, չնայած մենք մեծ սեր և հարգանք ենք տածում Հիսուսի նկատմամբ, մենք կարիք ունենք ընկալել, որ նա ամենազոր Աստվածը չէ:

Մարկոսի Կտակարանը նույնպես բացահայտում է, որ Հիսուսը ուներ գիտելիքի սահմանափակումներ: (Մարկոս գլուխ 13 տարբերակ 32) Հիսուսը հայտարարում է, որ նա տեղյակ չէր, թե երբ էր լինելու վերջին օրը, միայն Հայրն է տեղյակ դրանից. (Տես Մատթեոս 24:36) Ուստի նա չէր կարող լինել ամենագետ Աստվածը: Ոմանք ասում են, որ Հիսուսը տեղյակ էր վերջին օրվանից, սակայն նա ընտրում էր լռել: Սակայն այդ հետագայում բարդեցնում էր խնդիրը: Հիսուսը կարող էր ասել, որ նա տեղյակ է, սակայն ցանկություն չունի ասելու: Փոխարենը նա ասաց, որ տեղյակ չէ: Մենք պետք է հավատ ընծայենք նրան: Հիսուսը ճշմարտության մարդ էր: Ղուկասի Կտակարանը նույնպես

բացահայտում է, որ Հիսուսը ուներ սահմանափակ գիտելիք: Ղուկասը ասում է, որ Հիսուսը աճեց իր իմաաստությամբ գլուխ 2 տարբերակ 52: Հրեաների մեջ նույնպես գլուխ 5 տարբերակ 8 մենք ընթերցում ենք, որ Հիսուսը սովորեց հնազանդություն: Սակայն Աստծո գիտելիքը միշտ կատարյալ է և Աստված չի սովորում նոր բաներ: Նա միշտ տեղյակ է ամենից: Եթե Հիսուսը որևէ նոր բան ուսուցաներ, որը ապապցուցում է, որ նա տեղյակ չէր ամենից մինչ այդ և նա Աստված չէր: Արդյո՞ք նա այնուհետ կարող էր դառնալ Աստված:Ոչ: Որովհետև գոյություն ունի միայն մեկ Աստված և Նա Աստված է հավետական (տես Սաղմոսներ 90 տարբերակ 2)

Որևէ մեկը կարող է ասել, որ Հիսուսը Աստված էր, սակայն նա վերցրեց ծառայի կերպար և ուստի դարձավ սահմանափակ: Լավ, այդ կարող է նշանակել, որ Աստված փոխվում է: Սակայն Աստված չի փոխվում: Նա ասում է Իրեն (Մաղաքիա գլուխ 3 տարբերակ 6 ) Հիսուսը երբեք Աստված չէր, և երբեք չի եղել:Աստվածաշնչի մեջ միայն Եհովան է Աստված և Եհովան հայտնում է. «Մինչ ինձ, ոչ մի աստված չի ձևավորվել, ոչ էլ կձևավորվի ինձանից հետո: Ես, միայն Ես եմ Եհովան…» (Եսայի գլուխ 43 տարբերակ 10-11)

Ոմանք կարող են ասել, որ Հիսուսը ուներ երկու բնույթ, որ նա միաժամանակ հանդիսանում էր և մարդ և Աստված: Նրանք կարող են ասել, որ նշված սահմանափակումները պատկանում են Հիսուսի մարդկային բնույթին, սակայն նրա Աստվածային բնույթը անսահմանափակ է: Նկատի ունեցեք, որ Աստվածաշունչը երբեք չի հաստատել, որ

Հիսուսը ուներ երկու բնույթ:Այն հուսահատ լուծում է, որը առաջարկում են նրանք, ովքեր ցանկություն չունեն հավատալ, այն բանին, ինչ հստակորեն ասում է Աստվածաշունչը: Ինչպես նշել ենք ,Աստվածաշունչը հստակ ուսուցանում է, որ Հիսուսը Աստված չէ:

Այս կրկնակի բնույթի լուծումը բարդեցնում է խնդիրը: Օրինակ վերցրեք կտակարանների թզենու հատվածը (տես Մարկոս գլուխ 11, տարբերակ 12-25) Մարկոսը մեզ պատմում է հետևյալը. «Հիսուսը քաղցած էր: Հեռավորության վրա տեսնելով տերևներով թզենին, նա մոտեցավ տեսնելու, թե արդյոք այն պտուղ ունի: Երբ նա հասավ դրան, նա գտավ միայն տերևները, որովհետև թզենու ժամանակաշրջանը չէր»: (Մարկոս 11:12-14)

Այնուհետ Հիսուսը անիծեց ծառը, այնպես որ ոչ ոք չէր կարող կրկին համտեսել պտուղները:Հաջորդ առավոտ ծառը չորացավ արմատներից:

Այժմ, հատվածից պարզ է դառնում, որ Հիսուսը մեծ հզորություն ուներ անիծելու ծառը և արմատներով չորացնելու այն: Նույնպես պարզ է, որ Հիսուսը անիրազեկ էր երկու հաշվարկների մեջ: Առաջին հերթին, նա տեղյակ չէր, որ ծառը պտուղ չունի, մինչ մոտենալը: Երկրորդ, նա տեղյակ չէր, որ թուզի ժամանակը չէր:

Երկակի բնույթի տեսության կողմնակիցները պետք է ընդունեն, որ անեծքի հզորությունը Հիսուս Աստծո բնույթի մեջ էր: Նրանք նույնպես պետք է ընդունեն, որ նրա անիրազեկությունը կապված էր նրա մարդկային բնույթի հետ: Այնուհետ նրանք կարող են եզրահանգել, որ Աստված

բնույթը գործել է անհիրազեկության պահանջով, որը բխում է մարդկային բնույթից: Սակայն Աստված չի գործում անհիրազեկությամբ: Անշուշտ Նա տեղյակ էր, ինչպես որ Մարկոսը, որ Թզենու ժամանակը չէ և երբ ժամանակա գա, ծառը պտուղ կմատակարարի Աստծո արարածներին: Ինչու՞ պետք է Աստված անիծի լավ ծառը, որը նա է արարել: Ոմանք ցանկություն ունեին հավատալ, որ ծառը ամուլ էր և ուստի արժանի էր ոչնչացման: Սակայն, եթե Մարկոսը ճիշտ էր, թզենու անպուղ լինելու պատճառը թզենու պտղի սխալ ժամանակաշրջանն էր»: (Մարկոս գլուխ 12 տարբերակ 13 )

Աստվածաշնչի հղումները հստակ ցույց են տալիս, որ Հիսուսը ամենազոր, ամենագիտակ Աստվածը չէր: Սակայն գոյություն ունի ավելի շատ բան: խնդրում ենք ընթերցել:

## ՄԱՍ 4:

## ԱՐԴՅՈ՞Ք ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ և ՂՈՒՐԱՆԻ ՈՒՍՄՈՒՆՔՆԵՐԸ ՀԱՅՏԱՐԱՐՈՒՄ ԵՆ ՀԻՍՈՒՍԻ ԱՍՏՎԱԾԱՅՆՈՒԹՅՈՒՆԸ

Ոմանք կարող են ասել, որ Հիսուսի աստվածայնության այս ամբողջ քննարկումը անիմաստ է: Նրանց համար կարևոր խնդիրը Հիսուսին անձնական փրկիչ ընդունելն է: Հակառակը, Աստվածաշնչի հեղինակները շեշտում են, որ փրկված լինելու համար կարևոր է հասկանալ, թե ով է ճշմարիտ Աստվածը:

Սա ընկալելու ձախողումը նշանակում է ոտնահարել Աստվածաշնչի պատվիրաններից առաջինն ու ամենամեծը:Այս պատվիրանը շեշտել է Հիսուսը (Խ.Ա.Ո.Ն), երբ Մովսեսի Օրենքի ուսուցիչը հարցրել է նրան. «Ո՞րն է բոլոր պատվիրաններից ամենակարևորը»:

Հիսուսը պատասխանեց. «Ամենակարևորը սա է. «Լսեք, ով Իսրայել, Եհովան մեր Աստվածը, Եհովան մեկն է: Սիրեք Եհովային, ձեր Աստծուն ամբողջ ձեր սրտով և ամբողջ ձեր հոգով և ամբողջ ձեր մտքով և ամբողջ ձեր հզորությամբ»: (Մարկոս գլուխ 12 տարբերակներ 28-30) Նկատի ունեցեք, որ Հիսուսը մեջ էր բերում առաջին պատվիրանը Երկրորդ Օրենք գրքից, գլուխ 6 տարբերակներ 4-5: Հիսուսը հաստատում է, ոչ միայն այն, որ այս պատվիրանը վավերական է, այլև որ հանդիսանում է ամենակարևորը:

Եթե Հիսուսը իրեն Աստված կարծեր, ապա, ինչու՞ նա չէր ասում այդ: Փոխարենը, նա նշեց, որ Եհովան հանդիսանում է միակ Աստվածը: Մարդը,ում Աստվածաշունչը ոչ է ասում

հարցնելով Հիսուսին, հասկացավ դա և այն ինչ ասաց մարդը հետո, ակնհայտ է դարձնում, որ Աստվածը Հիսուսը չէ, քանի որ նա ասաց Հիսուսին. «Լավ, ուսուցիչ, դու ճիշտ ես ասելով, որ Աստված մեկն է և գոյություն չունի մեկ այլը, բացառությամբ նրա.- » (Մարկոս 12:32)

Այժմ,եթե Հիսուսը Աստված էր հանդիսանում, նա կարող էր մարդուն այդպես ասել: Փոխարենը նա թույլ տվեց մարդուն վերաբերվել Աստծուն այնպես , որը Հիսուսը չէր և այնուհետ նա նույնիսկ հաստատեց, որ մարդու խոսքերը իմաստուն են: (Տես տարբերակ 34)

Եթե Հիսուսը տեղյակ լիներ, որ Աստված երրորդություն էր, ապա, ինչու՞ նա չասաց այդ: Ինչու՞ նա չասաց, որ Աստվածը երեքի մեջ մեկն է, կամ երեքը մեկի մեջ: Փոխարենը նա հայտնեց, որ Աստված մեկն է և վերջ: Հիսուսի իրական մեկնաբանները մեջ կբերեն նրան նույնպես այս հայտարարության մեջ, որը վերաբերվում է Աստծո Եզակիությանը: Նրանք երբեք չեն ավելացնի երեք բառը այնտեղ, որտեղ Հիսուսը երբեք չի ասել դա:

Արդյո՞ք փրկությունը կախված է այս պատվիրանից: Այո, ասում է Աստվածաշունչը: Հիսուսը  ակնհայտ դարձրեց այս, երբ մեկ այլ մարդ մոտեցավ նրան, ուսուցանելու նպատակով (տես Մարկոս գլուխ 10 տարբերակներ 17-30 ) Մարդը ծնկի եկավ և ասաց Հիսուսին.'' Բարի ուսուցիչ, ի՞նչ պետք է ես անեմ, որպեսզի ժառանգեմ հավիտենական կյանքը:'' Հիսուսը պատասխանեց, «Ինչու՞ ես դու ինձ բարի կոչում:Ոչ ոք բարի չէ բացառությամբ միայն Աստծուց»: (Մարկոս գլուխ 12 տարբերակ 18)

Այսպիսի խոսքերով Հիսուսը ակնհայտ տարբերակում է Աստծոն և իրեն: Այնուհետ, նա շարունակեց պատասխանել մարդու հարցին, թե ինչպես ստանալ փրկություն: Նա ասաց. Եթե դուք ցանկություն ունեք մտնել հավերժ կյանք, հնազանդվեք պատվիրաններին (Մատթեոս գլուխ 19 տարբերակ 17, Մարկոս գլուխ 10 տարբերակ 19)

Հիշեք, որ ըստ Հիսուսի, բոլոր պատվիրաններից ամենակարևորը Եհովային միակ Աստված ճանաչելն է:

Այնուհետ Հիսուսը այս շեշտում է Հովհաննեսի կտակարանի մեջ: Գլուխ 17 տարբերակ 1 մեջ Հիսուսը երկինք հառեց իր աչքերը և աղոթեց, Աստծուն դիմելով Հայր: Այնուհետ, երրորդ տարբերակի մեջ նա ասաց Հորը. «Եվ հավերժ կյանքը նշանակում է իմանալ քեզ, որպես միակ իրական Աստծո և իմանալ Հիսուս Քրիստոսին, ում դու ուղարկել ես»: (Հովհաննես 17:3)

Անկասկած այս ապացուցում է, որ եթե մարդիկ պետք է հավերժ կյանք ստանան, նրանք պետք է գիտակցեն, որ միակին, ում աղոթում է Հիսուսը միակ իրական Աստվածն է և նրանք պետք է գիտակցեն, որ իրական Աստվածը ուղարկել է Հիսուսին:

Ոմանք ասում են, որ Հայրը Աստված է, Որդին Աստված է և Սուրբ Հոգին Աստված է: Սակայն, Հիսուսը ասաց, որ միայն Հայրն է հանդիսանում իրական Աստված: Հիսուսի ճշմարիտ հետևորդները պետք է այս դեպքում էլ հետևեն նրան: Հիսուսը ասում է, որ իր ճշմարիտ հետևորդներ են հանդիսանում նրանք, ովքեր հետևում են նրա ուսմունքներին: Նա ասաց. «Եթե դուք հնազանդվեք իմ

ուսմունքին, դուք իրականում կհանդիսանաք իմ աշակերտները»: (Հովհաննես 8:31) Նրա ուսմունքը այն է, որ մարդիկ պետք է շարունակեն պահպանել պատվիրանները, մասնավորապես առաջին պատվիրանը, որը շեշտում է, որ միայն Եհովան է Աստված և Եհովային պետք է սիրել ամբողջ սրտով և ունակությամբ:

Մենք սիրում ենք Հիսուսին, սակայն մենք չպետք է սիրենք նրան որպես Աստված: Այսօր շատերը Հիսուսին սիրում են ավելի շատ, քան Աստծուն: Պատճառը այն է, որ նրանք Աստծուն դիտում են որպես վրիժառու անձ, ով ցանկություն ունի նրանցից տուգանք բռնագանձել և Հիսուսին դիտում են որպես Փրկիչ, ով նրանց փրկեց Աստծո անեծքից: Մինչ դեռ Եհովան է մեր միակ Փրկիչը: Նա ասաց Իրեն (տես Եսայի 43:11;45:21-22)

Ղուրանը հաստատում է, առաջին պատվիրանը և այն ուղղում է մարդկությանը (տես 2:163) Եվ Աստված հայտնեց, որ ճշմարիտ հավատացյալները Նրան սիրեն ամենից և բոլորից առավել: (2:165)

## ՄԱՍ 5:

## ԱՐԴՅՈ՞Ք ՊՈՂՈՍԸ ՀԱՎԱՏՈՒՄ ԷՐ, ՈՐ ՀԻՍՈՒՍԸ ԱՍՏՎԱԾ ՉԷ

Շատերը Պողոսի գրառումները կիրառում են որպես ապացույց, որ Հիսուսը հանդիսանում է Աստված:Սակայն սա արդար չէ Պողոսի նկատմամբ, որովհետև Պողոսը ակնհայտորեն հավատաց, որ Հիսուսը Աստված չէ:

Տիմոթեոսին ուղղված իր առաջին նամակի մեջ Պողոսը գրում է. «Ես խնդրում եմ քեզ Աստծո անունից և Հիսուս Քրիստոսի և ընտրյալ հրեշտակների, պահպանել այս հրահանգները….» (Գլուխ 5 տարբերակ 21)

Այստեղից պարզ է դառնում, որ Աստծո տիտղոսը չի վերաբերվում Հիսուս Քրիստոսին, այլ մեկ ուրիշին: Հետևյալ գլխի մեջ նա կրկին տարբերակում է Աստծուն և Հիսուսին, երբ ասում է.

«Աստծո առջև, ով կյանք է պարգևում ամենին և Հիսուս Քրիստոսին…» (գլուխ 6 տարբերակ 13)

Պողոսը այնուհետ շարունակում է ասել. «մեր Տեր Հիսուս Քրիստոսի երկրորդ հայտնությունը, որին Աստված կբերի իր իսկ ժամանակի ընթացքում (գլուխ 6 տարբերակ 14-15):

Կրկին, Աստծո տիտղոսը դիտավորյալ հեռացնում են Հիսուսից:

Ի դեպ շատերը կարծում են, որ երբ Աստվածաշնչի մեջ Հիսուսին կոչում են «Տեր», նշանակում է «Աստված»: Սակայն Աստվածաշնչի մեջ տվյալ տիտղոսը նշանակում է

տեր կամ ուսուցիչ և կարելի է կիրառել մարդկանց պարագայում (տես Պետրոս գլուխ 3 տարբերակ 6)

Ամեն դեպքում ավելի կարևոր է, թե այնուհետ ինչ է ասում Պողոսը, քանի որ այն կկոտրի ցանկացած ենթադրություն, որ Պողոսը Հիսուսին համարում է Աստված : Հետևյալ հատվածի մեջ գետեղված նրա խոսքերը ակնհայտորեն ցույց են տալիս, որ Հիսուսը Աստված չէ: Պողոսը ասում է. «Աստված օրհնյալ է և միակ Կառավարիչը, արքաների Արքան և տերերի Տերը, ով անմահ է և ով ապրում է անհասանելի լույսի մեջ, ում ոչ ոք չի տեսել կամ ի վիճակի է տեսնել»: (Տիմոթեոս Ա գլուխ 6, տարբերակներ 15-16)

Պողոսը ասում է, որ միայն Աստված է անմահ:Անմահ նշանակում է, որ նա չի մահանում: Ստուգեք ցանկացած բառարան: Այժմ, յուրաքանչյուրը ով հավատք է ընծայում, որ Հիսուսը կնքել է մահկանացուն, չի կարող հավատք ընծայել, որ Հիսուսը հանդիսանում է Աստված: Նմանատիպ հավատքը հակասում է Պողոսի խոսքերին: Ուստի ասել, որ Աստվածը կնքել է մահկանացու նշանակում է հերյուրել Աստծուն: Ո՞վ կարող է կառավարել աշխարհը, եթե Աստված կնքի մահկանացուն:Պողոսը հավատք էր ընծայում, որ Աստված չի կնքել մահկանացուն:Պողոսը հավատ է ընծայում, որ Աստված չի կնքել մահկանացուն:

Հատվածի մեջ Պողոսը նաև ասում է, որ Աստված բնակվում է անհասանելի լույսի մեջ, որ ոչ ոք չի տեսել կամ ի իճակի է տեսնել Աստծուն:  Պողոսը տեղյակ էր , որ հազարավոր մարդիկ տեսել են Հիսուսին: Մինչ դեռ

Պողոսը կարող է ասել. որ ոչ ոք չի տեսել Աստծուն, որովհետև Պողոսը համոզված էր, որ Հիսուսը Աստված չէր:

Այդ իսկ պատճառով Պողոսը շարունակեց ուսուցանել, որ Հիսուսը Աստված չէ, այլ Աստծո Մեսսիա: (տես Գործք 9:22;18:5)

Երբ նա գտնվում էր Աթենքում, նա Աստծո մասին խոսեց որպես «Աստված, ով արարեց աշխարհը և այնտեղ առկա ամենը», այնուհետ նա Հիսուսին ճանաչեց որպես «մարդ, ում Աստված է  մատնանշել» (Գործք 17:24-31)

Պողոսի համար, ակնհայտորեն, Հիսուսը Աստված չէր և նա կցնցվեր տեսնելով, թե ինչպես են իր գրվածքները գործածում ապացուցելու նրա հավատքի հակառակը: Նույնիսկ, դատարանում Պողոսը վկայում էր ասելով. «Ես ընդունում եմ, որ ես երկրպագում եմ մեր հայրերի Աստծուն…» (Գործք 24:14)

Եվ Հիսուսը հանդիսանում է այդ Աստծո Ծառան, քանի որ մենք ընթերցում ենք Գործքի մեջ. «Մեր հայրերի Աստվածը փառաբանել է իր ծառա Հիսուսին» (գլուխ 3 տարբերակ 13)

Քանի որ Պողոսի համար միայն  Հայրն է հանդիսանում Աստված: Պողոսը ասաց, որ գոյություն ունի «մեկ Աստված և ամենի Հայրը»: (Եփեսացիներ գլուխ 4 տարբերակ 6 ) Պողոսը կրկին ասաց. «Մեզ համար գոյություն ունի միայն մեկ Աստված, Հայրը … և մեկ Տեր, Հիսուս Քրիստոսը»: (Կորնթացիներ Ա 8:6)

Պողոսի Փիլիպիցիներին ուղղված նամակը, գլուխ 2 տարբերակներ 6-11, հաճախ մեկնաբանում են որպես

Հիսուսի Աստված լինելու ապացույցը: Սակայն միննույն հատվածը ցույց է տալիս, որ Հիսուսը Աստված չէ: Տվյալ հատվածը պետք է համաձայնեցնել Եսայի 45:22-24 –ի հետ, որտեղ Աստված. Եհովան ասաց, որ յուրաքանչյուրը պետք է ծունկ խոնարհի Եհովային և յուրաքանչյուր լեզու պետք է խոստովանի, որ առաքինությունը և հզորությունը առկա է միայն Եհովայի մեջ: Պողոսը տեղյակ էր տվյալ հատվածից, քանի որ նա դա մեջ բերեց  Հռոմեացիներ 14:11-ի մեջ: Գիտակցելով, Պողոսը հայտնեց. «Ես ծնկի եմ գալիս Հոր առջև»: (Եփեսացիներ 3:14)

Հրեաներին ուղղված նամակը, գլուխ 1 տարբերակ 6 ասում է, որ Աստծո հրեշտակները պետք է երկրպագեն Որդուն: Սակայն այս հատվածը կախված է Երկրորդ օրենքից, գլուխ 32 տարբերակ 43, Հին Կտակարանի Յոթանասուն տարբերակից: Այս արտահայտությունը հնարավոր չէ գտնել ժամանակակից Քրիստոնյաների կիրառության տակ գտնվող  Հին կտակարանի մեջ և Քրիստոնյաները այլևս վավերական չեն համարում Յոթանասուն Տարբերակը: Ամեն դեպքում, նույնիսկ Յոթանասուն տարբերակը չի ասում երկրպագել Որդուն: Այն ասում է, որ Աստծո Հրեշտակները պետք է երկրպագեն Աստծուն, Եհովային;

Աստվածաշունչը պնդում է, որ պետք է երկրպագել միայն Եհովային: Երկրորդ օրենքի, գլուխ 6 տարբերակ 13-ի մեջ մենք ընթերցում ենք «Երկրպագեք Եհովային ձեր Աստծուն և միայն նրան ծառայեք»:

Հիսուսը (Խ.Ա.Ո.Ն) հավատ էր ընծայում սրան, քանի որ նա նույնպես այս նշում է  Ղուկաս գլուխ 4 տարբերակ 8 մեջ:

Եվ Հիսուսը նույնպես ծնկեց գետին և երկրպագեց Աստծուն (տես Մատթեոս 26:39)

Պողոսը տեղյակ էր որ Հիսուսը երկրպագեց Աստծուն (տես Հրեաներ 5:7) և Պողոսը ուսուցանեց, որ Հիսուսը հավերժ հնազանդ կմնա Աստծուն (տես Կորնթացիներ գլուխ 15 տարբերակ 28)

## ՄԱՍ 6:

## Արդյո՞ք Չորրորդ Ավետարանի վկայությունը ժխտում է Հիսուսի  աստվածայնությունը:

Հովհաննեսի Ավետարանը մերօրյա ավարտուն տեսքի է եկել Հիսուսի համբարձումից մոտ յոթանասուն տարի անց: Իր ավարտուն տեսքով այս Ավետարանը ևս մեկ բան է ասում Հիսուսի մասին, որը անհայտ էր նախորդ երեք Ավետարանների մեջ- որ Հիսուսը հանդիսանում էր Աստծո Խոսքը; Հովհաննեսը նկատի ուներ, որ Հիսուսը հանդիսանում էր Աստծո գործակալը, ում միջոցով Աստված արարեց ամենը: Երբեմն թյուրըմբռման շնորհիվ, կարծիք է առաջանում, որ Հիսուսը ինքն էր Աստված: Սակայն Հովհաննեսը, ինչպես Պողոսը ասում էր, որ Հիսուսը Աստծո առաջին արարածն էր: Աստվածաշնչի Հայտնության գրքի մեջ մենք կարող ենք գտնել, որ Հիսուսը հանդիսանում է  «Աստծո արարածների սկիզբը» (գլուխ 3 տարբերակ 14; տես նույնպես Կորնթացիներ Ա 8:6 և Կողոսացիներ 1:15)

Յուրաքանչյուրը, ով ասում է, թե Աստծո Խոսքը անհատ է, որին ընտրել է Աստվածը, նույնպես պետք է ընդունի, որ Խոսքը արավել է, քանի որ Աստվածաշնչի մեջ Խոսքը խոսում է ասելով. «Եհովան արարեց ինձ» (Առակներ գլուխ 8 տարբերակ 22)

Այնուամենայնիվ այս Ավետարանը պարզորոշ ուսուցանում է, որ Հիսուսը Աստված չէ: Եթե այս ուսմունքը շարունակություն չունենա, ապա այն կարող է հակասել մյուս երեք Ավետարաններին և Պողոսի նամակներին,

որոնց շնորհիվ այն պարզորոշ հաստատում է, որ Հիսուսը Աստված չէ:

Այստեղ մենք գտնում ենք, որ Հիսուսը համահավասար չէ Հորը, քանի որ Նա ասաց. «Հայրը ավելի հզոր է քան ես»: (Հովհաննես 14:28)

Մարդիկ մոռացության են տալիս, որ նրանք ասում են , թե Հիսուսը հավասար է Հորը: Ու՞ մ մենք պետք է հավատք ընծայենք, Հիսուսին, թե մարդկանց:

Մահմեդականները և Քրիստոնյաները համամիտ են, որ Աստված ինքնբավ է:Դա նշանակում է, որ Նրա գոյությունը չի բխում ոչ ոքից: Մինչդեռ Հովհաննեսը մեզ ասում է, որ Հիսուսի գոյությունը պայմանավորված է Հորից:Այս Ավետարանի մեջ Հիսուսը ասում է.''Ես ապրում եմ Հոր շնորհիվ:'' (Հովհաննես 6:57) Հովհաննեսը մեջ բերելով Հիսուսի խոսքերը մեզ ասում է, որ Հիսուսը ինքն իրեն ոչ մի իշխանություն չունի. «Ես ոչինչ չեմ կարող անել իմ իսկ իշխանությամբ»: (Հովհաննես 5:30) Սա համամիտ է մյուս Ավետարանների կարծիքներին, որոնք վերաբերվում են Հիսուսին: Օրինակ, Մարկոսից մենք ուսուցանում ենք, որ Հիսուսը իր հզորությամբ է ներկայացրել հրաշքները, որոնք նրա հսկողությունից դուրս են: Սա առանձնապես պարզ է դառնում մի դրվագից, որտեղ նա մի կնոջ է բժշկում անտանելի արյունահոսությունից: Կինը ետևից մոտեցավ նրան և դիպավ նրա հանդերձին և անմիջապես բժշկվեց: Սակայն Հիսուսը տեղյակ չէր, թե ով դիպչեց նրան:Մարկոսը Հիսուսի արարքը նկարագրում է հետևյալ կերպ.''Անմիջապես Հիսուսը գիտակցեց, որ հզորությունը

հեռացավ իրենից: Նա դարձավ ամբոխին և հարցրեց. «Ո՞վ դիպավ իմ հանդերձին»: (Մարկոս 5:30)

Նրա աշակերտները չէին կարող սպառիչ պատասխան ներկայացնել, այսպիսով Մարկոսը մեզ ասում է. «Հիսուսը շարունակում էր շուրջը դիտել, որպեսզի տեսնի, թե ով արեց դա»: (5:32)

Սա ցույց է տալիս, որ կնոջը բժշկող հզորությունը Հիսուսի իշխանությունից դուրս էր: Նա տեղյակ էր, որ հզորությունը հեռացել էր իրենից, սակայն նա տեղյակ չէր, թե որտեղ էր այն: Մեկ այլ գիտակ արարած պետք է առաջնորդեր այդ կնոջ բուժումը: Այդ գիտակը Աստված էր: Այնուհետ տարօրինակ չէ, որ Առաքյալների Գործքի մեջ մենք ընթերցում ենք, որ Աստված Հիսուսի միջոցով հրաշքներ էր գործում: (Գործք 2:22) Աստված նույնպես յուրօրինակ հրաշքներ է գործել մյուսների միջոցով, սակայն դա նրանց Աստված չէր դարձնում (տես Գործք 19:11) Այդ դեպքում, ինչու՞ են Հիսուսին համարում Աստված:

Նույնիսկ, երբ Հիսուսը հարություն տվեց իր ընկեր Լազարուսին, նա ստիպված էր խնդրել Աստծուն: Լազարիուսի քույրը, Մարթան, տեղյակ էր այդ մասին, քանի որ նա ասաց Հիսուսին. «Ես գիտեմ, որ նույնիսկ այժմ, Աստված քեզ կտա  այն, ինչ որ դու խնդրես»: (Հովհաննես 11:22)

Մարթան տեղյակ էր, որ Հիսուսը Աստված չէր, և Հովհաննեսը, ով խրախուսանքով հաղորդեց սա , նույնպես տեղյակ էր:

Հիսուսը ուներ Աստված, որովհետև, երկինք հարմաբարձման ժամանակ, նա ասաց. «Ես համբարձվում եմ իմ Հոր և ձեր Հոր, իմ Աստծո և ձեր Աստծո մոտ»: (Հովհաննես 20:17)

Հովհաննեսը համոզված էր, որ ոչ ոք չէր տեսել Աստծուն, չնայած նա տեղյակ էր, որ շատերն էին տեսել Հիսուսին (տես Հովհաննես 1:18 և Հովհաննես Ա 4:12): Փաստորեն Հիսուսը ինքն ամբոխին ասաց, որ նրանք երբեք չեն տեսել Հորը, ոչ էլ լսել են Հոր ձայնը:(Հովհաննես 5:37) Նկատի ունեցեք, որ եթե Հիսուս լիներ Հայրը, նրա հայտարարությունը կարող էր կեղծիք լինել:

Ըստ Հովհաննեսի Կտակարանի ո՞վ էր հանդիսանում միակ Աստվածը: Միայն Հայրը, այս վկայեց Հիսուսը, երբ նա հայտնեց, որ Հրեաների Աստվածը հանդիսանում է Հայրը: (Հովհաննես 8:54) Եվ Հրեաների Աստվածը ոչ այլ ոք է քան Եհովան, ով հայտնեց, որ նա է հանդիսանում միակ Աստվածը: Հիսուսը նույնպես հաստատեց, որ միայն Հայրն է հանդիսանում միակ ճշմարիտ Աստվածը: (տես Հովհաննես 17:1-3) Եվ Հիսուսն ասաց իր թշնամիներին. «Դու վճռել ես սպանել ինձ, մարդու, ով խոսել է ճշմարտությունը, որը ես լսել եմ Աստծուց»: (Հովհաննես 8:40)

Ըստ Հովհաննեսի, հետևաբար Հիսուսը Աստված չէր և ըստ Հովհաննեսի գրառումների,գոյություն չունի ոչ մի ապացույց, որ նա Աստված էր, եթե ցանկություն չկա հակադրելու Հովհաննեսին:

## ՄԱՍ 7:

## ՀԻՍՈՒՍԸ և ՀԱՅՐԸ ՀԱՆԴԻՍԱՆՈՒՄ ԵՆ ԵՐԿՈՒ ԱՌԱՆՁԻՆ ԱՐԱՐԱԾՆԵՐ

Շատերը Աստվածաշնչի որոշակի տարբերակներ կիրառում են, որպեսզի ապացուցեն, որ Հիսուսը Աստված է: Ամեն դեպքում, այս բոլոր տարբերակները, եթե ընկալենք, ապացուցում են հակառակը:

Օրինակ, Մետթեոս գլուխ 9, տարբերակ 2 Հիսուսն ասաց մի տղամարդու. «Տունչ քաշիր որդիս, քո մեղքերը ներվել են»: Սրա շնորհիվ ոմանք ասում են, որ Հիսուսը պետք է որ Աստված լինի, քանի որ միայն Աստված կարող է ներել մեղքերը: Ամեն դեպքում, եթե դուք ցանկություն ունեք ընթերցել հաջորդող միայն մի քանի տարբերակներ, դուք կարող եք գտնել, որ մարդիկ «փառաբանում են Աստծուն, ով նմանատիպ լիազորություն է տվել մարդուն»: (Մատթեոս 9:8)

Սա ցույց է տալիս, որ մարդիկ տեղյակ էին և Մատթեոսը համամիտ էր, որ Հիսուսը միակ մարդը չէր, ով Աստծուց ստացել էր նմանատիպ լիազորությունը: Հիսուսը ինքն էր նշել, որ նա չի խոսում ելնելով իր լիազորությունից (Հովհաննես 14:10) և նա ոչինչ չի գործել դրանից ելնելով, այլ նա խոսում է միայն այն, ինչ Հայրն է ուսուցանել նրան (Հովհաննես 8:28) Այն, ինչ արեց Հիսուսը հետևյալն է: Հիսուսը մարդուն գիտելիք հայտարարեց, որը նա էր ստացել Աստծուց, որ Աստված ներել է մարդուն: Նկատի ունեցեք, որ Հիսուսը չի ասել «Ես ներում եմ ձեր մեղքերը» այլ «Ձեր մեղքերը ներվել են» ենթադրելով, ինչպես կարող

են անել Հրեա ունկընդիրները, որ Աստված ներել է մարդուն: Այնուհետ, Հիսուսը հզորություն չուներ ներել մեղքերը և այդ իսկ դրվագի մեջ նա իրեն կոչեց «Մարդու Որդի»: (Մատթեոս 9:6)

Հովհաննես 10:30 հաճախ ապացույց են կիրառում,որ Հիսուսը Աստված է, որովհետև Հիսուսն ասաց. «Ես և հայրը մեկն ենք»: Սակայն, եթե դուք ընթերցեք հաջորդող վեց տարբերակները, դուք կարող եք գտնել, թե ինչպես է Հիսուսը բացատրում, որ նրա թշնամիները սխալ էին կարծելով, որ նա իրեն հայտարարում էր Աստված: Ակնհայտորեն Հիսուսը նկատի ուներ, որ նա Հոր հետ հետապնդում է մեկ նպատակ:

Հիսուսը նույնպես աղոթեց, որ իր աշակերտները միահամուռ լինեն, ինչպես Հիսուսը և Հայրը: Ակնհայտորեն նա չէր աղոթում, որ իր բոլոր աշակերտները պետք է ինչ որ կերպ միաձուլվեն մեկ անհատականության մեջ(տես Հովհաննես 17:11,22) Եվ, երբ Ղուկասը հաղորդեց, որ աշակերտները բոլորը մեկն են, Ղուկասը նկատի չունի, որ նրանք դարձան մեկ մարդ արարած, սակայն նրանք կիսում են ընդհանուր նպատակ, թեև նրանք առանձին էակներ էին (տես Գործք 4:32):

Էության առումով, Հիսուսը և Հայրը երկուսն են, քանի որ Հիսուսը ասաց, որ նրանք երկու վկաներ են (Հովհաննես 8:14-18) Նրանք պետք է լինեն երկուսը, քանի որ մեկը ավելի հզոր է, քան մյուսը (տես Հովհաննես 14:28)

Երբ Հիսուսը աղոթեց խաչից փրկության համար, նա ասաց. «Հայր, եթե դու ցանկանաս, վերցրու այս գավաթը ինձանից,

քանի որ ոչ թե իմ, այլ քո ցանկությունն է ի կատար ածվում»: (Ղուկաս 22:42)

Սա ցույց է տալիս, որ նրանք երկու առանձին կամք ունեն, չնայած Հիսուսը հպատակել է իր կամքը Հոր կամքին: Երկու կամք նշանակում է երկու առանձին անհատականություն:

Բացի այդ, հաղորդում են, որ Հիսուսն ասաց. «Իմ Աստված, իմ Աստված, ինչու՞ ես դու ինձ լքել»: (Մատթեոս 27:46 ) Եթե մեկը լքում է մյուսին, ապա նրանք պետք է երկու առանձին էություն լինել:

Կրկին, հաղորդում են, որ Հիսուսն ասաց. «Հայր, քո ձեռքն եմ ես հանձնում իմ հոգին»: (Ղուկաս 23:46) Եթե մեկի հոգին կարելի է հանձնել մեկ ուրիշի ձեռքը, նրանք պետք է երկու առանձին էակներ լինեն:

Այս բոլոր օրինակների մեջ Հիսուսը ակնհայտորեն ստորադաս է Հորը: Երբ Հիսուսը ծնկի եկավ և աղոթեց, ակնհայտորեն նա չէր աղոթում իրեն (տես Ղուկաս 22:41): Նա աղոթում էր իր Աստծուն:

Ողջ Նոր Կտակարանի մեջ, Աստված կոչում են միայն Հորը: Փաստորեն, «Հայր» և «Աստված» տերմինները գործածվում են նշելու մեկ անհատի , ոչ թե երեքի և երբեք Հիսուսի: Սա նույնպես պարզ է այն փաստից, որ Մատթեոսը «Հայր» տերմինը փոխարինում է «Աստված» տերմինով Կտակարանի ամենաքիչը երկու հատվածների մեջ (համեմատեք Մատթեոս 10:29 և Ղուկաս 12:6 և Մատթեոս 12:50 Մարկոս 3:35 հետ): Եթե Մատթեոսը ճիշտ էր, ապա Հայրը միայնակ հանդիսանում է Աստված:

Արդյո՞ք Հիսուսը Աստված էր: Ոչ: Որովհետև Հիսուսն ասաց. «Երկրի վրա ոչ ոքի մի կոչեք 'հայր', քանի որ դուք ունեք մեկ հայր և նա երկնքում է»: (Մատթեոս 23:9) Քանի որ Հիսուսը երկրի վրա էր, երբ ասաց սա, ապա նա Հայր չէ:

Ղուրանը փորձում է մարդկանց բերել ճշմարիտ հավատքի, որը ուսուցանել էր Հիսուսը և նրա աշակերտները, ովքեր շարունակեցին այն: Այս ուսմունքը շեշտում էր առաջին պատվիրանի շարունակական նվիրվածությունը, որ Եհովան հանդիսանում էր միակ Աստվածը: Եհովան միակ ճշմարիտ Աստվածն էր, ում Նոր Կտակարանը «Հայր» էր կոչում և Ղուրանը Ալլահ: Ղուրանի մեջ Ալլահը ուղղորդում է Իր ծառաներին Աստվածաշնչի ընթերցողներին կոչել առ ճշմարիտ հավատք: Աստված ասաց.

قُلْ يَا أَهْلَ الْكِتَابِ تَعَالَوْا إِلَى كَلِمَةٍ سَوَاءٍ بَيْنَنَا وَبَيْنَكُمْ أَلا نَعْبُدَ إِلاَّ اللَّهَ وَلا نُشْرِكَ بِهِ شَيْئًا وَلا يَتَّخِذَ بَعْضُنَا بَعْضًا أَرْبَابًا مِنْ دُونِ اللَّهِ فَإِنْ تَوَلَّوْا فَقُولُوا اشْهَدُوا بِأَنَّا مُسْلِمُونَ

**«Ասա. «Օվ Գրքերի մարդիկ: Համաձայնության եկեք մեր և ձեր միջև. որ մենք պետք է երկրպագենք միայն Ալլահին, և որ մենք չպետք է Նրան վերագրենք գործընկեր և որ մեզանից ոչ ոք չպետք է Տեր վերցնի այլոց ,բացառությամբ Ալլահի**»: (Ղուրան 3:64)

## ԱՍՏՎԱԾ ՈՉ ԾՆՈՒՄ Է, ՈՉ ԷԼ ՄԻԱԾԻՆ Է

### ՄԱՍ 1:

### Ղուրանական Վկայություն

Մարդկանց ընդհանուր սխալը կայանում է նրանում, որ նրանք Աստծուն պատկերացնում են որպես զերէակ, ով գտնվում է ինչ որ տեղ երկնքում: Այնուհետ նրանք Աստծուն վերագրում են ամեն տեսակի մարդկային գործունեություն և հարաբերություններ, կարծես Նա նման է մարդ արարածներին: Օրինակ պարզ է, որ մարդիկ զավակներ են ունենում, նմանատիպ մարդիկ էլ եզրահանգում են, որ Աստված նույնպես ունի զավակներ: Սակայն Աստված այս գաղափարը կեղծ է համարում:

Իր Գրքի մեջ Աստված մեզ ասում է, որ Նրա պես ոչինչ գոյություն չունի: (Տես Սուրա 42:11) Աստված նաև ասում է, որ գոյություն չունի իրեն որևէ համեմատական բան (112:4) Անշուշտ Աստված նյութական էակ չէ: Աստված մեզ ասում է.

«**Մտապատկերը չի կարող կռահել Նրան, սակայն Նա կարող է կռահել բոլոր մտապատկերները**»: (Ղուրան 6:103 )

Աստված հայտնում է, որ նրանք, ովքեր Իրեն որդիներ և դուստրեր են վերագրում, կեղծում  և անտեղյակ են (տես Սուրա 6:100) Ղուրանը դիմում է ասելով. «Երկինքների և երկրի նախաձեռնողը: Ինչպե՞ս է Նա կարող զավակ ունենալ, երբ  նա չունի ոչ մի կենակից, երբ Նա արարել է ամենը և Տեղյակ է ամենից»: (6:101) Սա ակնհայտ պատասխան է նրանց, ովքեր կարող են հայտնել, որ Աստված ունի բառացի որդի կամ դուստր, տերմին, որը ըստ մարդկային լեզվի, նշանակում է զույգի ժառանգ:

Ոմանք կարող են ասել, որ ամեն դեպքում, Աստված առանց կենակցի էլ կարող է զավակ ունենալ: Այդ դեպքում

խոսքը չի գնում զավակի, այլ Աստծո արարածի մասին: Ամեն դեպքում Աստված հայտնում է, որ Նա չի ծնում, ոչ էլ Միածին է: (Սուրա 112:3)

Ոմանք կարող են ասել, որ Աստված որդեգրել է: Աստված հայտնում է, որ այս գաղափարն էլ անհիմն է: Քանի որ բոլորը արդեն պատկանում են Աստծուն, ի՞նչ նպատակ կարող է ունենալ որդեգրումը: Աստված ասում է. «Եվ նրանք ասում են. Ալլահն Իրեն որդի է վերցրել: Փառք լինի Նրան: Ոչ, սակայն ամենը ինչ երկնքում և երկրի վրա է պատկանում է Նրան: Ամենը հպատակվում են Նրան: Երկինքների և երկրի նախաձեռնող: Երբ Նա որևէ բան է որոշում, Նա ասում է միայն Եղիր և այն լինում է»: (2:116-117)

Այն գաղափարը, որ մարդկանց պետք է Աստծո զավակներ կոչել, սխալ է: Ինչու՞ նրանց չկոչել այն, ինչ որ կան: Նրանք Աստծո արարած մահկանացուներն են: Նրանց, ովքեր ասում են. «Մենք Ալլահի որդիներն ենք և նրա սիրելիները» Ալլահն ասում է պատասխանել հետևյալը. «Ապա, ինչու՞ է Նա ձեզ խրատում ձեր մեղքերի համար: Ոչ, դուք Նրա արարած մահկանացուներն եք»: (5:18) Աստված նման է չէ մարդկանց, զավակի կարիք ունենալու համար: Աստված հայտնում է, որ Նա ինքնբավ է: Նա նմանատիպ բաների կարիք չունի: (Ղուրան 10:68)

Մարդիկ միտում ունեն առաքինի մարդկանց Աստծո զավակներ համարել: Սակայն Աստված մեզ հրահանգում է նրանց կոչել ոչ թե Իր զավակներ այլ, առաքինի ծառաներ: Աստված ասում է. «Եվ նրանք ասում են.Բարերարն Իրեն որդի է վերցրել: Փառաբանվի Նա: Ոչ, սակայն նրանք, ում

որդի են կոչում պատվելի ստրուկներ են; նրանք չեն խոսում, մինչ Նա չի խոսում և նրանք գործում են ըստ Իր հրամանի»: (21:26-27) Հաջորդ հատվածի մեջ մենք տեսնում ենք, որ մարդիկ Ալլահի նմանատիպ առաքինի ծառային կոչում են Աստծո Որդի, չնայած նա իրեն չի կոչել այդ տիտղոսով, այլ շարունակաբար տեղեկացրել է, որ նա Ալլահի ծառան է:

## ՄԱՍ 2:

## Ի՞նչ է ասում Ղուրանը Հիսուսի մասին

Փառահեղ Ղուրանը բարեհաճորեն է խոսում Հիսուսի (Խ.Ա.Ո.Ն) մասին և ոչ մի բացասական բան չի հաղորդում: Օրինակ, տեսեք այս մեջբերումը փառահեղ Ղուրանից, որտեղ Ալլահն ասում է.

يَا أَهْلَ الْكِتَابِ لَا تَغْلُوا فِي دِينِكُمْ وَلَا تَقُولُوا عَلَى اللَّهِ إِلَّا الْحَقَّ ۚ إِنَّمَا الْمَسِيحُ عِيسَى ابْنُ مَرْيَمَ رَسُولُ اللَّهِ وَكَلِمَتُهُ أَلْقَاهَا إِلَىٰ مَرْيَمَ وَرُوحٌ مِّنْهُ ۖ فَآمِنُوا بِاللَّهِ وَرُسُلِهِ ۖ وَلَا تَقُولُوا ثَلَاثَةٌ ۚ انتَهُوا خَيْرًا لَّكُمْ ۚ إِنَّمَا اللَّهُ إِلَٰهٌ وَاحِدٌ ۖ سُبْحَانَهُ أَن يَكُونَ لَهُ وَلَدٌ ۘ لَّهُ مَا فِي السَّمَاوَاتِ وَمَا فِي الْأَرْضِ ۗ وَكَفَىٰ بِاللَّهِ وَكِيلًا

«**Ով Գրերի Մարդիկ: Մի չափազանցրեք ձեր կրոնի մեջ և ոչինչ մի ասեք Ալլահի վերաբերյալ, բացառությամբ ճշմարտության: Մեսսիան, Մարիամի Որդին, միայն Ալլահի առաքյալն էր և Նրա խոսքը, որը Նա փոխանցեց Մարիամին, և ոգի Նրանից: Այսպիսով հավատք ընծայեք Ալլահին և Նրա մարգարեներին**»: (Ղուրան 4:171; տես նույնպես 66:12)

Վերոհիշյալ հատվածի մեջ Հիսուսին կոչել են չորս առաքինի տիտղոսներով: Նա Մեսսիա, Ալլահի Մարգարե, Ալլահի Խոսք և Ոգին էր: Միևնույն հատվածի մեջ ակնհայտ է, որ Ղուրանը ձգտում է հուսալքել կրոնի չափազանցությունը: Հետագայում միևնույն հատվածի մեջ Ալլահն ասում է.

«Ալլահը միակ, Մեկ Աստվածն է: Վեր է Իր վերհությամբ, որպեսզի Նա որդի ունենա: Նրան է ամենը ինչ

երկնքներում և երկրի վրա է: Եվ Ալլահը բավ է որպես Պաշտպան»: (Ղուրան 4:171)

Հիսուսին Աստծո որդու կոչի ժխտումը տեղի չի ունենում նվազեցնելու Նրան: Ոչ: Հակառակը, դա տեղի է ունենում Փառաբանելու Աստծուն, մեծարելու Նրա անունը և հռչակում է Նրա մեծարգո վեհությունը:

Ղուրանը հաստատում է, որ Հիսուսը ծնվել է կույսից: Երբ հրեշտակը հայտնեց Մարիամին, խաղաղություն լինի նրան, որ նա զավակ կունենա, նա ասաց. «Իմ Տեր: Ինչպե՞ս ես կարող եմ զավակ ունենալ, երբ ոչ մի մահկանացու ինձ չի դիպչել»:

Նա ստացավ հետևյալ պատասխանը. «**Այսպիսիով դա կլինի: Ալլահն արարում է այն, ինչ Նա ցանկանում է: Եթե նա մի բան է որոշել, Նա ասում է միայն եղիր և այն լինում է**»: (Ղուրան 3:45, 47)

Մեկ այլ սուրայի մեջ, Մեսսիայի ծնունդի հետ կապված միջադեպերից հետո, Ղուրանը եզրակացնում է հետևյալը. «**Սազական չէ Ալլահի վեհությանը, որ Նա Իրեն որդի վերցնի: Փառք լինի Նրան: Երբ նա որևէ բան է որոշում, Նա միայն ասում է .Եղիր և այն լինում է**»: (Ղուրան 19:35)

Ղուրանը փորձում է ուղղել մարդականց ընդհանուր թյուրիմացությունը: Շատերը ենթադրում են, որ քանի որ Հիսուսը հայր չունի, ապա պետք է որ Աստված լինի նրա հայրը:

Փառք Ալլահին: Նա չի հանդիսանում երեխաների հայր: Նա արարում է յուրաքանչյուրին ում մենք ճանաչում ենք, լինեն

կին թե տղամարդ: Սակայն Նա Ադամին արարեց առանց տղամարդ և կին: Եվ Նա արարեց Եվային տղամարդուց, այլ ոչ թե կնոջից: Այնուհետ պատկերը լրացնելու համար, Աստված արարեց Հիսուսին կնոջից, առանց տղամարդու: Աստված ներկայացրեց Իր յուրաքանչյուր կերպ արարելու հզորությունը: Ալլահն ասում է.

إِنَّ مَثَلَ عِيسَى عِنْدَ اللَّهِ كَمَثَلِ آَدَمَ خَلَقَهُ مِنْ تُرَابٍ ثُمَّ قَالَ لَهُ كُنْ فَيَكُونُ

**«Ահա, Ալլահի հետ Հիսուսի նմանությունը համապատասխանում է Ադամի նմանությանը: Նա արարեց նրան փոշուց, այնուհետ ասաց նրան Եղիր և նա եղավ»:** (3:59)

Կարևոր է գիտակցել, որ Հիսուսը (Խ.Ա.Ո.Ն) երբեք չի ուսուցանել, որ նա Աստծո Որդին էր: Ալլահն ասում է, որ նրանք, ովքեր Հիսուսին կոչում են 'Աստծո Որդի'կրկնում են այլ մարդկանց խոսքերը (տես Սուրա 9:30) Հիսուսը միայն ուսուցանել է այն, ինչ նրան պատվիրել են (5:117) Նա Ինքնին երջանիկ էր լինելով Ալլահի ծառան (4:172) Որպես Ալլահի Մարգարե Հիսուսը տեղյակ էր, որ ոչ ոք երկինքներում և երկրի վրա չի կարող մոտենալ Ալլահին, բացառապես որպես ստրուկ (19:93)

Վերջապես նրանք, ովքեր ասում են, որ Աստված որդի ունի, պետք է գիտակցեն, որ նրանք ոչ մի երաշխիք չունեն, նրանք կրկնում են մի բան առանց գիտելիքի: ( Հովհաննես 10:68)

Հաջորդ հատվածի մեջ, Աստծո կամոք, մենք Աստվածաշնչի մանրակրկիտ ուսումնասիրությունից կտեսնենք, որ Հիսուսը իրեն երբեք չի կոչել Աստծո որդի:

## ՄԱՍ 3

## ԱՐԴՅՈ՞Ք ՆՈՐ ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ ՀԻՍՈՒՍԻ «ԱՍՏԾՈ ՈՐԴԻ» ՀՂՈՒՄՆԵՐԸ ԾԱԳՈՒՄ ԵՆ ԱՄԵՆԱՀՆԱԳՈՒՅՆ ԳՐԵՐԻՑ:

Հեշտ է Աստվածաշնչի մեջ գտնել տարբեր հատվածներ, որտեղ Հիսուսին կոչում են Աստծո որդի: Հնարավոր չէ գտնել հատվածներ, որտեղ Հիսուսը իրեն կոչեց Աստծո Որդի, կամ որտեղ նա Աստծուն կոչում է իր հայր: Ամեն դեպքում, Աստվածաշնչի ուշադիր ուսումնասիրությունը բացահայտում է, որ դրանք հանդիսանում են Աստվածաշնչի փոփոխությունների արդյունք: Հիսուսը երբեք չի հայտնել, որ նա հանդիսանում է Աստծո Որդի:

Ամեն անգամ հայտնաբերում են Աստվածաշնչի նոր գիր և հնագույն գրերից շատ փոփոխություններ են կատարում, որպեսզի հանգեն մեկ ընդհանուր հայտարարի: Մարկոս 1:1 մեջ կարելի է ընթերցել. «Կտակարանի սկիզբը Հիսուսի Քրիստոսի, Աստծո Որդու մասին»: (Մարկոս 1:1, Նոր Միջազգային Տարբերակ):

Այդ տարբերակի վերջում, առկա է մեկ փոքրիկ նամակ, որը մեզ ուղղորդում է ուշադրություն դարձնել էջի ստորին հատվածին: Այնտեղ մենք գտնում ենք, որ որոշ ձեռագրեր, չունեն «Աստծո Որդի» տիտղոսը: Եվ դրանք հանդիսանում են հնագույն, վստահելի ձեռագրեր: Վկայությունը այնքան գրավիչ է, որ մեկ Աստվածաշնչի խմբագիրները ուղակի հեռացրել են Աստծո Որդի տիտղոսը, ամբողջ տարբերակի միջից:Ուստի Սուրբ Գրերի Նոր Աշխարհի թարգմանության տարբերակի մեջ մենք ընթերցում ենք,

«Հիսուս Քրիստոսի ավետիսի սկիզբը» (Մարկոս 1:1) . «Աստծո Որդի» տիտղոսը այնս առկա չէ այդ տարբերակի մեջ:

Մեկ այլ նմանատիպ փոփոխություն պետք է տեղի ունենար Գործք Առաքյալների 8:37 մեջ, այս դարում պատրաստված Աստվածաշնչի յուրաքանչյուր ազնիվ թարգմանության մեջ: Հին ձեռագրերի վկայությունները պահանջում են, որ տարբերակը հեռացվի Աստվծաշնչի բոլոր տարբերակներից: Եթե դուք անցնեք ձեր Աստվածաշնչի Նոր Միջազգային Տարբերակը և դիտեք Գործք 8:37 դուք չեք կարող գտնել դա տեքստի մեջ: Դուք կարող եք գտնել տարբերակ 36 և այնուհետ տարբերակ 38, բայց ոչ թե 37: Եթե դուք ցանկություն եք հայտնում տեղեկանալ, թե ինչ է ասում տարբերակ 37, դուք պետք է ստուգեք էջի ստորին հատվածի նշումները: Այս տարբերակը պարունակում է խոստովանություն, որ Հիսուսը Աստծո որդին է: Այն հեռացրել են, որովհետև դրանց բացակայությունը նախորդ հնագույն ձեռագրերից նշանակում է, որ ինչ որ մեկը այնտեղ ավելացրել է:

Որոշ փոփոխություններ ակնհայտ են դարձել Աստվածաշնչյան տարբերակների Ավետարանների ուղղակի համեմատության շնորհիվ: Դուք ինքներդ կարող եք հետազոտել դա: Օրինակներից մեկն է հանդիսանում հարյուրապետի խոստովանությունը, որ Հիսուսը Աստծո Որդին է, ինչպես հաղորդել է Մարկոսի Ավետարանը. «Իրոք, այս մարդը հանդիսանում էր Աստծո Որդին»: (Մարկոս 15:39)

Նույն հարյուրապետի նույն տեսարանի նույնանման խոստովանությունը հաղորդում է նաև Ղուկասը: Սակայն ըստ Ղուկասի հարյուրապեստը հաղորդել է ասելով. «Իրոք, այս մարդը անմեղ էր»: (Ղուկաս 23:47)

Ղուկասի Ավետարանի մեջ Աստծո Որդի տիտղոսը առկա չէ: Այստեղ և Մարկոսը և Ղուկասը չեն կարող ճիտ լինել: Խոստովանությունը կարող է սխալ լինել նվազագույնը մեկ Ավետարանի մեջ:

## ՄԱՍ 4:

## ԱՐԴՅՈ՞Ք ՀԻՍՈՒՍԸ ՀԱՅՏԱՐԱՐԵԼ Է «ԱՍՏԾՈ ՈՐԴԻ» ՏԻՏՂՈՍԸ

Աստվածաշնչի ուսանողները հեշտորեն կարող են նկատել, որ Աստծո Որդի տիտղոսը հաճախ կիրառում են Մատթեոսի մեջ, առանց Մարկոսի և Ղուկասի համաձայնության: Օրինակ, ի՞նչ է ասում անցորդը խաչի տեսարանի մասին: Նրանց խոսքերը հաղորդել է Մարկոս 15:29-30 և նույնպես Մատթեոս 27:40: Եթե դուք համեմատեք երկու զեկույցները, դուք կարող եք նկատել, որ Մատթեոսը ավելացրել է Հիսուսի Աստծո Որդի լինելու արտահայտությունը:

Մեկ այլ օրինակ կարող ենք գտնել Մատթեոս 14:22-33- մեջ: Հիսուսը հրաշագործ կերպով ուղղակի հինգ կտոր հացով և երկու ձկով կերակրել էր հինգ հազար մարդ: Այնուհետ նա իր աշակերտներին ուղարկում է ծովի այն կողմը: Աստծոն աղոթելուց հետո, Հիսուսը հրաշագործ կերպով քայլում է ծովի վրայով, որպեսզի հանդիպի իր աշակերտներին: Վերջ ի վերջո, նա նրանց հետ նավակ է նստում: Ինչպե՞ս այս ամենին արձագանքեցին աշակերտները: Մարկոսը և Մատթեոսը մեզ տալիս են երկու տարբեր պատասխան: Մարկոսն ասում է, «Եվ նրանք ամբողջովին ապշած էին, քանի որ նրանք չէին գիտակցում հացի փորձը, սակայն նրանց սրտերը կարծրացել էին»: (Մարկոս 6:51-52)

Ամեն դեպքում Մատթեոսի մեջ աշակերտները բոլորովին ապշած չէին: Նրանք այս բոլորը պատկերել էին և ճշգրտորեն տեղյակ էին, թե ինչ անել: Մատթեոսն ասաց.

«Եվ նավակի մեջ գտնվողները երկրպագեցին նրան ասելով.» Իրոք, դու Աստծո Որդին ես… (Մատթեոս 14:33)

Կրկին Մատթեոսը զարգացրել է պատմությունը, որպեսզի ցույց տա, որ Հիսուսը հանդիսանում է Աստծո Որդի:

Օգտակար կլինի այստեղ տեսնել, Աստվածաշնչի մեկնաբանների կարծիքը այս տարբերության մասին: Մատթեոսի Ավետարանի, Նոր Ամերիկյան Աստվածաշնչի մեջ, առկա են նշումներ. «Այս խոստովանությունը խիստ հակասական է Մարկյան զուգահեռին, որտեղ աշակերտները» բոլորովին ապշած էին… (էջ. 35)

Նոր Կտակարանի Պելիկան մեկնաբանությունների մեջ, հեղինակը, Ջոն Ֆենթոնը մեզ հիշեցնում է, որ Մարկոսի մեջ աշակերտները չէին ըմբռնում: Այնուհետ Ֆենթոնը մեկնաբանում է. «Մատթեոսը այս բաց է թողնում, որովհետև իր Ավետարանի մեջ աշակերտներին ներկայացրել են որպես մարդիկ, ում տրվել է պատկերացում»: (Սուրբ Մատթեոսի Ավետարան, էջ.247)

Հարփերի Աստվածաշնչի մեկնաբանությունը նույնպես նշել է Մարկոսի և Մատթեոսի տարբերությունը: Մեկնաբանելով Մատթեոսին, խմբագիրները ասում են. «Ինչպես ասում է Մարկոսը, անըմբռնողականությամբ արձագանքելու փոխարեն, ամբողջ անձնակազմը Հիսուսին ընդունեց որպես Աստծո Որդի»: (1988 խմբագրությունէջ. 967)

Այսպիսով, արդյո՞ք մենք կարող ենք տեղեկանալ, թե իրականում է ինչ է տեղի ունեցել: «Մեկնաբանելով» Մատթեոսի Ավետարանի միևնույն հատվածը,

Աստվածաշնչի Մեկ Հատոր Մեկնաբանությունների թարգմանիչները ասում են. «Մատթեոսի սիրելի «փոքր հավատք» արտահայտության ներկայությունը առաջարկում է կամ, որ նա արարել է այս պատմությունը, կամ որ նա վերաշխատել է իր «թ» արժեքի վրա»: (էջ. 627)

Ինչպես մենք արդեն նշել ենք, ուշադիր ուսումնասիրությունը հայտնում է, որ Աստծո Որդի տիտղոսը մեկը, չէ, ինչ Հիսուսը հայտնել է իր համար: Ոչ էլ իր ճշմարիտ աշակերտներն են նրան կոչել այդ տիտղոսով:

## ՄԱՍ 5:

## ՄԱՏԹԵՈՍԻ ԱՎԵՏԱՐԱՆԸ ԱՍՏԾՈՒՆ «ՀԱՅՐ» ԿՈՉԵԼՈՎ ԱՐԴՅՈ՞Ք ԱՐԴԱՐԱՑՆՈՒՄ Է ՀԻՍՈՒՍԻ «ԱՍՏԾՈ ՈՐԴԻ» ՏԻՏՂՈՍԸ

4-րդ մասի մեջ մենք արդեն տեսել ենք, որ Մատթեոսը ցանկություն ուներ Մարկոսի և Ղուկասի ավետարանների մեջ ավելացնել Աստծո Որդի տիտղոսը: Եկեք տեսնենք մեկ այլ օրինակ ևս: Մեկ դրվագի մեջ Հիսուսը հարցրեց աշակերտներին, թե իրենց կարծիքով ով է նա: Մարկոս 8:29, Ղուկաս 9:20 և Մատթեոս 16:6 հաղորդում են Պողոսի հետևյալ պատասխանը.

Մարկոս. «Դու Հիսուս Քրիստոսն ես»:

Ղուկաս. «Դու Աստծո Քրիստոսն ես»

Մատթեոս. «Դու Քրիստոսն ես, կենդանի Աստծո որդին»:

Հաշվի առեք, որ Պողոսի հայտարարությանը Մատթեոսը ավելացրել է կենդանի Աստծո որդի արտահայտությունը: Հիսուսին «Աստծո Որդի» կոչման այլ կողմ է հանդիսանում Աստծուն «Հայր» կոչելը: Ավետարանների մեջ մենք գտնում ենք, որ Հոր տիտղոսը նույնպես ավելացրել են Աստվածաշնչի մի քանի հատվածներում, որտեղ դրանք առկա չէին: Մատթեոսը ցանկություն ուներ ոչ միայն Հիսուսին «Աստծո Որդի» կոչել, այլ նույնպես Աստծուն «Հայր»: Մատթեոս 10:29 մեջ Հիսուսը Աստծուն կոչեց «ձեր Հայր»: Հիսուսի նույնական ասացվածքը հաղորդում է նաև Ղուկասը էական տարբերությամբ, այնտեղ Աստծուն կոչում են Աստված (տես Ղուկաս 12:6)

Մեկ այլ նմանատիպ օրինակ տեղի ունեցավ Մատթեոս 10:32-33-ի մեջ: Հաղորդում են, որ Հիսուսն ասաց. «Այսպիսով յուրաքանչյուրը, ով ընդունում է ինձ մարդկանց առջև: Ես նույնպես կընդունեմ իմ Հոր առջև, ով երկնքում է, սակայն ով ժխտում է ինձ մարդկանց առջև, ես նույնպես կժխտեմ իմ Հոր առջև, ով երկնքում է»: (Մատթեոս 10:32-33) Հիսուսի միևնույն ասացվածքը նույնպես հաղորդում է Ղուկասը, սակայն «իմ Հայր» տիտղոսը այնտեղ առկա չէ: Եվս մեկ անգամ, Մատթեոսը փոփոխում է Հիսուսի ասացվածքը, համոզելու ընթերցողներին, որ Հիսուսը հանդիսանում է Աստծո Որդին:

Մեկ այլ օրինակ է հանդիսանում Հիսուսի հետևյալ ասացվածքը. «Նա, ով ի կատար է ածում Աստծո կամքը իմ եղբայրն է և քույրը և մայրը»: (Մարկոս 3:35)

Նույնպես, Ղուկասը այս ասացվածքը հետևյալ կերպ է հաղորդել. «Իմ մայրը, և իմ եղբայրները նրանք են, ովքեր ունկընդրում են Աստծո խոսքը և ի կատար են ածում դա»: (Ղուկաս 8:21)

Երկու զեկույցների մեջ խոսքերը տարբերվում են, սակայն նկատի ունեցեք, որ յուրաքանչյուր դեպքում Աստծոն Աստված են կոչում: Սակայն Հիսուսի միևնույն ասացվածքի մեջ, որը հաղորդում է Մատթեոսը, մենք կարող ենք գտնել, որ Աստծուն կոչում են «իմ Հայր» (տես Մատթեոս 12:50) Եվս մեկ անգամ, Մատթեոսը փոփոխում է Հիսուսի ասացվածքը օգնելու ապացուցել, որ Հիսուսը հանդիսանում է Աստծո Որդի:

Մենք չենք կարող ամբողջովին ներկայացնել Հովհաննեսի Ավետարանը: Սակայն որոշակի հատվածների մեջ, մենք Աստծո օգնությամբ, ցույց կտանք, որ նույնիսկ ավելի շատ փոփոխություններ են տեղի ունեցել:

Հաջորդ հատվածի մեջ մենք կարող ենք տեսնել, որ վաղ հետևորդները Հիսուսին դիտել են որպես մեսսիա և Աստծո մարգարե, և ոչ երբեք Աստծո Որդի:

## ՄԱՍ 6:

## ԱՐԴՅՈ՞Ք ՀԻՍՈՒՍԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ ՀԱՎԱՏՈՒՄ ԵՆ ՆՐԱՆ ՈՐՊԵՍ «ԱՍՏԾՈ ԾԱՌԱ»

Աստվածաշնչի Առաքյալների Գործքը հանդիսանում է ներկայիս խնդրի վկայության կարևոր հատված: Այս գիրքը մանրամասնում է աշակերտների գործունեությունը Հիսուսին հաջորդող երեսուն տարիների ընթացքում: Կարևոր է տեսնել, թե ինչ են ասում աշակերտները Հիսուսի մասին և ինչ տիտղոսներ են վերագրում նրան:

Արագ ակնհայտ է, որ նրանք հաճախ Հիսուսին վերաբերվում են որպես Աստծո ծառայի, սակայն երբեք Աստծո Որդու: Օրինակ Պողոսը ասում է. «Աբրահամի, Իսահակի և Հակոբի Աստվածը, մեր հայրերի Աստվածը փառաբանել է իր ծառա Հիսուսին»: (Գործք 3:13) Այնուհետ Պետրոսն ասաց. «Աստված համբարձել է իր ծառային»: (Գործք 3:26, որտեղ ծառայի տիտղոսը վերաբերվում է Հիսուսին):

Ոչ միայն Պետրոսը, սակայն հավատացյալների ամբողջ խումբը Հիսուսին դիտում են որպես Աստծո ծառա: Երբ նրանք բարձրացրեցին իրենց ձայները միասին Աստծո աղոթքին, ըստ իրենց խոսքերի Աստծուն, նրանք Հիսուսին կոչեցին «քո սուրբ ծառա Հիսուս, ում դու օծեցիր»: (Գործք 4:27) Նրանք այս տիտղոսը նույնպես կրկնում են տարբերակ 30-ի մեջ: Հետևողականորեն Հիսուսի նախնական հետևորդները նրան Աստծո ծառա են կոչել:

Ոմանք սխալմամբ կարծում են, որ աշակերտները Հիսուսին կոչեցին Աստծո որդի: Ըստ էության

անհետևողական թարգմանությունը նպաստեց այս սխալ տպավորությանը: Արքա Ջեյմսի Աստվածաշնչի մեջ, թարգմանիչները Հիսուսին կոչում են «Աստծո Որդի» (Գործք 13:3,26) և «Աստծո զավակ» (Գործք 4:27) Նրանք հունարեն pida բառը ուղղակի թարգմանեցին «որդի» կամ «զավակ»: Սակայն այս բառը նույնպես նշանակում է «ծառա» և ներկայիս կոնտեքստը պահանջում է այս թարգմանությունը, քանի որ Գործքի հեղինակը փորձում է այս հատվածի մեջ հաստատել, որ Հիսուսը իրոք, Աստծո ծառան է:

Թարգմանիչները տեղյակ էին, որ հունարեն այս բառը նշանակում է ծառա: Երբ միևնույն բառը կիրառել է Դավիթի համար գլուխ 4 տարբերակ 25 –ի մեջ, նրանք այն թարգմանել են «ծառա»: Ինչու՞ Հիսուսին էլ չկոչել միևնույն տիտղոսով: Կամ, եթե նրանք զգան, որ 'որդի'-ն հանդիսանում է ճիշտ թարգմանությունը, ապա, ինչու՞ Դավիթին էլ չկոչել 'Աստծո Որդի': Հիսուսին և Դավթին կոչել են հունարեն միևնույն տիտղոսով: Ապա ինչու՞ նրանց չկոչել անգլերեն միևնույն տիտղոսով: Այլ թարգմանիչները նկատել են այս անհետևողականությունը և Աստվածաշնչի ժամանակակից թարգմանությունների մեջ ուղղել են այն:

Ուստի, Աստվածաշնչի Նոր Միջազգային Տարբերակը և շատ այլ վերոհիշյալ տարբերակներ Հիսուսին կոչել են Աստծո Ծառա: Այնուամենայնիվ, փաստը, որ Հիսուսը հանդիսանում է Աստծո ծառա այնքան լավ հայտնի է, որ նույնիսկ Արքա Ջեյմսի Աստվածաշունչը նրան տալիս է այս տիտղոսը (Մատթեոս 12:18) Անրադառնալով Եսայի

42:1, Մատթեոսը Հիսուսին ճանաչեց որպես մեկ իրական Աստծո, Եհովայի ծառա:

## ՄԱՍ 7:

## ԱՐԴՅՈ՞Ք ԱՌԱԿՆԵՐԻ ԱՆԲԱՐԻՇՏ ԲՆԱԿԻՉՆԵՐԻ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԸ ՎԻՐԱՎՈՐՈՒՄ ԵՆ ԱՍՏԾՈՒՆ

Հիսուսի վաղ հետևորդներին պարզ էր, որ Հիսուսը հանդիսանում էր մարգարե, ինչպես մյուս նախորդ մարգարեները (տես Ղուկաս 4:24; Հովհաննես 6:14 Հովհաննես 9:17)

Ամեն դեպքում, Ավետարանի հեղինակները ցանկություն ունեին ուսուցանել, որ Հիսուսը նման չէր մյուս մարգարեներին, այլ այն, որ նա հանդիսանում էր Աստծո Որդի: Իրենց ջանքերով նրանք չեն դադարում գիտակցել, որ իրենց ուսմունքը արդար չէ Աստծո նկատմամբ: Ավետարանների որոշ տեղեկություններ վատ են անրադարձել Աստծո վրա: Սակայն նրանք չեն գիտակցել դա: Օրինակ Առակները անբարիշտ բնակիչների, որոնց մասին հաղորդել են Ավետարանների առաջին երեք հատվածների մեջ:

Ավետարանները ցույց են տալիս, որ Հիսուսը ցանկություն ուներ դիմակայել Հրեաներին մարգարեներին սպանելու իրենց պատմության, և նրան սպանելու իրենց մտադրության դեմ: Այսպիսով, նա ասաց նրանց հետևյալ առակը, որը ակնհայտորեն նրանց մասին է: Պատմությունը հետևյալն է, «Մի տղամարդ խաղողի այգի տնկեց: Նա ցանկապատեց այն, վազերի շուրջ փոս փորեց և պահակադիտանոց կառուցեց: Այնուհետ, նա վարձակալեց այն մի քանի ֆերմերների և գնաց ճանապարհորդության:Բերքահավաքի ժամանակ, նա

բնակիչներին ուղարկեց մի ծառա, որպեսզի վազերից հավաքեն պտուղները: Սակայն, նրանք բռնեցին նրան, ծեծի ենթարկեցին և դատարկաձեռն ետ ուղարկեցին: Այնուհետ, նա ուղարկեց մեկ այլ ծառա նրանց մոտ; նրանք հարվածեցին նրա գլխին և ամոթալի վերաբերմունք ցուցաբերեցին: Նա ուղարկեց մեկ ուրիշի, որին նրանք սպանեցին: Նա ուղարկեց շատ ուրիշների; ոմանց նրանք ծեծի ենթարկեցին, մյուսներին սպանեցին: Նա ուղարկեց վերջինին, որդուն, ում նա սիրում էր: Նա նրան ուղարկեց վերջինը ասելով. «Նրանք հարգանք կտածեն իմ որդու նկատմամբ»: Սակայն բնակիչները ասացին միմյանց, «Սա ժառանգն է: Եկեք սպանենք նրան և ժառանգությունը կլինի մերը»: Այսպիսիով նրանք վերցրեցին նրան և սպանեցին և դուրս նետեցին խաղողի այգուց: Ի՞նչպես պետք է վարվեր սեփականատերը: Նա պետք է գար և սպաներ այդ բնակիչներին և խաղողի այգին մյուսներին տար»: (Մարկոս 12:1-9)

Այս առակի մեջ, թույլ բնակիչները ներկայացնում են Հրեաներին, ծառաները մարգարեներին, ում Աստված ուղարկել է մեկը մյուսի ետևից և խաղողի այգու տերը ներկայացնում է Աստծուն: Որդին ակնհայտորեն ներկայացնում է Հիսուսին, ում Աստված ուղարկել է վերջինը: Այսպիսով, ցույց են տալիս, որ Հիսուսը մյուս մարգարեներից տարբերվում է: Նա ծառաներից մեկը չէ; Նա սիրելի որդին է: Ամեն դեպքում դա  ցանկանում են ցուցադրել Ավետարանների հեղինակները:

Նրանք, ովքեր վերլուծեն այս պատմությունը, ամեն դեպքում, հեշտությամբ կարող են նկատել, թե որքան

հիմար էր խաղողի այգու սեփականատիրոջ վերաբերմունքը: Նա մեկը մյուսի ետևից ուղարկեց իր ծառաներին գիտակցելով, որ նրանց կենթարկեն ծեծի և կսպանեն, այնուամենայնիվ ուղարկեց իր սիրելի որդուն միևնույն վտանգը: Չնայած նա ուներ լիիրավ իշխանություն գործելու, ոչինչ չարեց մինչ սպանեցին իր որդուն: Նա նաև անհիրազեկ էր ապագային: Նա միամտորեն ենթադրեց, որ թույլ ծառաները կարող են ներկայացնել նրա որդուն: Այսպիսով, արդյո՞ք հնարավոր է համեմատել այս հիմար տղամարդուն Աստծո հետ: Սակայն, այս նպատակն է հետապնդում պատմությունը: Այդ իսկ պատճառով այն հեռացրել են Պելիկան Նոր Կտակարանի Մեկնաբանությունների միջից, Սուրբ Մարկոս էջ.309, քիչ հավանական է, որ Հիսուսը պատմել է այս առակը:

Աստծո որդի ունենալու ամբողջ գաղափարը ժխտում է Աստծուն: Նմանատիպ խոսակցությունը Աստված համարում է վիրավորանք: Ուստի, չնայած մենք սիրում ենք Հիսուսին, պատվում նրան և հավատում նրան, մենք չպետք է նրան կոչենք «Աստծո Որդի»: Եվ մենք չպետք է այսպես հիմարաբար համեմատություն դնենք Աստծո և մարդու ծրագրերի միջև, ինչպես արեց խաղողի այգու սեփականատերը:

Հիսուսը հանդիսանում էր Աստծո ճշմարիտ մարգարե, նա մեսսիա էր և ասաց ճշմարտությունը: Սակայն նա երբեք չի հայտարարել Աստծո Որդի լինելը:

# ԱՍՏՎԱԾԱՇՆՉՅԱՆ ՈՐՈՇ ԹՅՈՒՐԸՄԲՌՆԵԼԻ ՏԱՐԲԵՐԱԿՆԵՐ

## ԱՅԺՄ ԵՏԱԴԱՐՁ ՀԱՅԱՑՔ ՈՒՂՂԵՆՔ ՀԱՄԱՏԵՔՍՏԻՆ

«Ես և Հայրը մեկն ենք», Եվ այլ տարբերակներ, որոնք սովորաբար թյուրըմբռնելի են, նշանակելու, որ Հիսուսը Աստված է:

**«Ես և Հայրը մեկ ենք»**

Հաճախ մեջ են բերում Հովհաննես 10:30, որպեսզի ցույց տան, որ Հիսուսը հավասար է Աստծուն: Սակայն, երբ դուք ընթերցում եք տարբերակը իր կոնտեքստով, դուք գտնում եք, որ ամբողջական հատվածը ապացուցում է հակառակը: Մարդիկ հաճախ բավարարվում են մեջբերելով տարբերակը առանձին, որպեսզի ցույց տան, որ Հիսուսն ասաց. «Ես և Հայրը մեկ ենք" և այնուհետ Հրեաները վերցրեցին հատիկ առ հատիկ նրան, որովհետև նրանք ընկալեցին, նրա խոսքերը որպես նրա Աստված լինելը: Միայն հատվածը ընթերցելուց հետո, նախորդ և հաջորդ մասերից հետո, դուք կարող եք գիտակցել, որ Հրեաները թյուըմբռնել են այն, ինչ ասել է Հիսուսը: Փաստորեն, Հիսուսը փորձեց բացատրել այն, ինչ նկատի ունի և բացատրությունը մինչ այժմ առկա է Աստվածաշնչի մեջ, որն էլ տեսանելի է յուրաքանչյուրին: Զարմանալի է, որ մարդկանց հոծ բանակ, ովքեր հայտնում են, որ սիրում են Հիսուսին, արհամարհում են այս բացատրությունը և կրկնում են սխալը, որը գործել են Հիսուսի թնամիները: Ահա հատվածը այնպես, ինչպես ներկայացվել է Աստվածաշնչի Նոր Միջազգային Տարբերակի մեջ. (22)

Ձմեռ էր, (23) և Հիսուսը տաճարի տարածքում քայլում էր Սողոմոնի Սյունաշարով: (24) «Հրեաները հավաքվեցին նրա շուրջ ասելով,"Որքա՞ն երկար դու մեզ կպահես անորոշության մեջ: Եթե դու Քրիստոսն ես, բացահայտ ասա մեզ»: (25) Հիսուսն պատասխանեց. «Ես ասել եմ ձեզ, սակայն դուք չեք հավատացել: Հրաշքները. որոնք ես գործել եմ իմ Հոր անունից խոսում են իմ փոխարեն, (26) «սակայն դուք չեք հավատում, որովհետև դուք իմ ոչխարի հոտը չեք: (27) «Իմ հոտը լսում է իմ ձայնը; ես ճանաչում եմ նրանց և նրանք հետևում են ինձ: (28) «Ես տալիս եմ նրանց հավերժ կյանք և նրանք երբեք չեն անհայտանա, ոչ ոք չի կարող ճանկել նրանց իմ ձեռքից (29) «Իմ Հայրը, ով նրանց ինձ է տվել, ավելի հզոր է, քան բոլորը; ոչ ոք չի կարող ճանկել նրանց իմ Հոր ձեռքից: (30) «Ես և Հայրը մեկ ենք»: (31) «Կրկին, Հրեաները քարեր վերցրեցին, որպեսզի նրան քարկոծեն, (32) «սակայն Հիսուսը ասաց նրանց, «Ես ձեզ ցույց եմ տվել շատ մեծ հրաշքներ Հորից: Դրանցից ո՞րից դուք կքարկոծեք ինձ»: (33) «Մենք չենք քարկոծում ձեզ դրանցից որևէ մեկով» պատասխանեցին Հրեաները, «սակայն անպատվության համար, որովհետև դու ընդհամենը մարդ ես, ով իրեն հայտարարում է Աստված»: (34) Հիսուսը պատասխանեց նրանց. «Արդյո՞ք գրված չէ ձեր Օրենքի մեջ, «Ես ասել եմ, որ դուք աստվածներ եք»: (35) «Եթե նա նրանց կոչեց «աստվածներ» ում համար որ եկել էր Աստված խոսքը -և գիրը հնարավոր չէ կոտրել – (36) «ի՞նչ կասեք նրա մասին, ում Հայրը ազատ է արձակել ինչպես իր իսկ սեփականություն և ուղարկել է աշխարհ: Այնուհետ, ինչու «եք դուք ինձ մեղադրանք ներկայացնում

անարգանքի մեջ, այն պատճառով , որ ես ասել եմ » Ես Աստծո Որդին եմ» (Հովհաննես 10:22-36)

Հատվածը ամբողջականությամբ դիտելիս, ակնհայտ պարզ է դառնում, որ Հիսուսը Աստված չէ: Եկեք դիտենք հետևյալ կետերը.

1. Անհավատ Հրեաները պնդեցին, որ Հիսուսը նրանց պետք է ասեր, թե իրոք, նա հանդիսանում էր Քրիստոսն, այնպես, որ նրանք չկասկածեին նրա ինքնությանը (տարբերակ 24): Քրիստոս տիտղոսը Աստվածաշունչը կիրառում է այն անհատների համար, ում Իսրայելի արքան են օծում: Տիտղոսը կիրառում են նաև այլ մարդկանց համար (Եսայի 45:1, Պարսկաստանցի Սիրուսին կոչել են Աստծո Քրիստոս): Հրեաները սպասում էին մեկ այլ Քրիստոսի (Հունարեն Քրիստոս բառը համարժեք է եբրայերեն Մեսսիա և արաբերեն Մասիիհ բառերին): Այսպիսով նրանք Հիսուսին հարցրեցին, արդյո՞ք նա այն մեկն էր, ում նրանք սպասում էին: Հիսուսը պատասխանեց, որ նա արդեն ասել է նրանց և նա նույնիսկ Աստծո անունից հրաշքներ է ներկայացրել, որպեսզի ապացուցի իր Քրիստոս լինելու հայտարարությունը (տարբերակ 25), սակայն նրանք հավատ չէին ընծայում նրան (տարբերակ 26), որովհետև նրանք չէին պատկանում Հիսուսի հոտին (տարբերակ 26) Նրանք, ում Հայրը տվել էր Հիսուսին, հանդիսանում էին նրա հոտը, (հետևորդները) և նրանք հավատ էին ընծայում Հիսուսին, երբ նա ասաց որ նա հանդիսանում է Քրիստոս (տարբերակներ 27-29):

2. Հիսուսի ճշմարիտ հետևորդները երբեք չեն անհայտանա, որովհետև Հիսուսը նրանց հավերժ կյանք է

տվել: Ըստ նույն Ավետարանի Հովհաննես 17:3, հավերժ կյանք նշանակում է հավատք ընծայել, որ Հայրը Ճշմարիտ միակ Աստվածն է, և որ Հիսուսը Քրիստոսն է և մարգարեն այդ մեկ Ճշմարիտ Աստծու: Հիսուսը այս գիտելիքը տալիս է բոլոր նրանց, ում Հայրը տվել է նրան (Հովհաննես գլուխ 17:2): Այնուհետ ինչ ասում էր Հիսուսը, խոսքեր էին, որոնց, եթե հավատք ընծայեն, կնշանակի հավերժ կյանք բոլոր նրանց համար, ովքեր արել են դա: Այդ իսկ պատճառով նույն Ավետարանի մեջ, Պետրոսին մեջ են բերել Հիսուսին ասելով «Դու ունես հավերժ կյանքի խոսքերը: Մենք տեղյակ ենք և հավատք ենք ընծայում, որ դու Աստծո Սուրբ Մեկն ես»: (Հովհաննես 6:68-69) Այսպիսով նրանք հավատք էին ընծայում, որ Հիսուսը Աստված չէր, այլ Սուրբ Մեկը, ում Աստված ուղարկել էր այսինքն Քրիստոս և Աստծո Մարգարե: Ավետիսի Աստվածաշունչը այս հատվածը ավելի պարզ է ներկայացնում: Դու ունես խոսքեր, որոնք տալիս են հավերժ կյանք: Եվ այժմ, մենք հավատք ենք ընծայում և տեղյակ ենք, որ դու Սուրբ Մեկն ես, ով եկել է Աստծուց: (Հովհաննես 6:68-69)

3. Ոչ ոք չի կարող հեռացնել աշակերտներին Հիսուսից (Հովհաննես 10:28), որովհետև նրանց տվել էր Հայրը և Հայրը ավելի մեծ է, քան բոլորը (տարբերակ 29) Մինչ Հայրը Հիսուսին օգնում է պահպանել աշակերտներին, ոչ ոք չի կարող հեռացնել նրանց Հիսուսի ձեռքից, այնպես, ինչպես նրանք չեն կարող հեռացնել նրանց Հոր ձեռքից: Երբ Հիսուսն ասաց, որ նա և Հայրը մեկ են, նա ի նկատի ուներ սա, որ Հայրը օգնում է նրան լրացնել իր առաջադրանքը և երբ նա զբաղված է փորձելով փրկել իր աշակերտներին չարիքից հեռու, Հայրը հաստատում է, որ նրանցից ոչ մեկի

չի մատնի կորստյան, իհարկե բացառությամբ նրա, ով պետք է դավաճաներ նրան:

4. Հիսուսն ասաց, որ Հայրը ավելի մեծ է, քան բոլորը (Հովհաննես 10:29), ներառելով Հիսուսին: Նա, ով կասկածում է, կարող է ընթերցել (Հովհաննես 14:28), որտեղ Հիսուսը հայտարարեց. «Հայրը ավելի մեծ է, քան Ես »: Անկախ Հիսուսի այս պարզ հայտարարության, շատերը, ովքեր հայտնեցին հետևել նրան, պնդեցին, որ Հիսուսը համահավասար է Հորը: Ու՞մ մենք պետք է հավատք ընծայենք: Նրա իրական հետևորդներին կարելի է տարբերակել, ինչպես նրանց, ովքեր կառչեցին Հիսուսի խոսքերին: Ահա թե ինչի ուղղորդեց Հիսուսը. Եթե դուք կառչեք իմ ուսմունքին, դուք իրոք հանդիսանում եք իմ աշակերտները:

Այնուհետ, դուք պետք է գիտակցեք ճշմարտությունը և այն ձեզ ազատ կարձակի: (Հովհաննես 8:31-32)

5.Երբ Հիսուսն ասաց. «Ես և Հայրը մեկ ենք»: (Հովհաննես 10:30), Հրեաները վերցրեցին քարեր, որպեսզի նրան քարկոծեն (տարբերակ 31): Հիսուսը չէր կարող հասկանալ նրանց վերաբերմունքը, որովհետև նա ոչ մի սխալ խոսք չէր ասել: Այսպիսով, նա հարցրեց նրանց, թե որտեղ էր սխալվել, որպեսզի նրանք քարկոծեն (տարբերակ 32): Նրանք պատասխանեցին, որ Հիսուսը անարգանք է գործել, երբ նա մարդ լինելով իրեն Աստված է հայտնել (տարբերակ 33) Սակայն Աստվածաշնչի հատվածից այն ակնհայտ է, որ Հիսուսը չի հայտնել իր Աստված լինելը: Նա հայտնել է իր Քրիստոս լինելը (տարբերակ 25) Ե՞րբ է նա հայտնել իր Աստված լինելը: Նրանք դիտավորյալ սխալ մեջբերում են

Հիսուսին վերագրված խոսքերը, որոնք հետագայում կփորձեն կիրառել որպես սխալ վկայությունը ընդդեմ նրա, այնպես, որ հանդիսանա սպանության պատճառ:

6. Հիսուսն ընդունում է, որ նա ասել է, «Ես Աստծո Որդին եմ» (տարբերակ 36) Սակայն նա ասաց, որ այն ոչինչ չի նշանակում բացառությամբ այն փաստի, որ Աստված նրան առանձնացրել է որպես իր մասնիկ և ուղարկել է աշխարհ (տարբերակ 36) Փաստը, որ Աստված նրան առանձնացրել է, նշանակում է որ Աստված նրա համար առաջադրանք է ընտրել, առանձնացրել է մյուսներից: Նմանատիպ անհատի արաբերեն տիտղոսը Մուսթաֆա է, որը նշանակում է Ընտրյալ: Աստծո բոլոր Մարգարեները արժանի են այս տիտղոսին: Փաստը, որ Աստված նրան ուղարկել է աշխարհ, նշանակում է , որ նա հանդիսանում է Աստծո Մարգարե: Նրան ուղարկել են Աստծո ուղերձով: Ակնհայտորեն Աստված, ով ուղարկեց Հիսուսին, ինքնին Հիսուսը չէ:

7. Հիսուսը փորձում էր նրանց բացատրել, որ նույնիսկ, եթե նա ասաց մի բան, որը նրանք սխալ են մեկնաբանում, ինչպես նրա Աստված լինելը, նրանք պետք է գիտակցեն, որ Աստվածաշնչի մեջ մարդկանց կոչել են աստվածներ և հրեաները չեն ժխտում այս (տարբերակ 35), այսպիսով նրանք արագորեն  համաձայնության չեն գալիս Հիսուսի հետ, մինչ նա հնարավորություն կստանա բացատրել խոսքերը: Հիսուսի լիարժեք խոսքերի ընկալելու համար, եկեք դիմենք Աստվածաշնչի տարբերակին, որտեղ նա ուշադրության կոչ է անում: Հատվածը առկա է Սաղմոսների 82 կետի մեջ. «Ես ասացի, «Դուք»

աստվածներ եք «դուք բոլորդ Ամենաբարձրայլի որդիներն եք»: Սակայն դուք կկնքեք մահկանացուն ինչպես ուղղակի մարդիկ; դուք կընկնեք ինչպես մեկ այլ կառավարիչ»: (Սաղմոսներ 82:7-8)

Սաղմոսներից պարզ է դառնում, որ Աստված պատվել է որոշ մարդկանց նրանց կոչելով 'աստվածներ: Սակայն, իհարկե նրանք իրականում աստվածներ չէին: Սա ուղղակի փոխաբերական արտահայտություն է, որը կիրառում է  Աստվածաշունչը: Հիսուսը Հրեաներին հիշեցրեց սա, այնպես, որ նրանք ընկալեն, որ նույնիսկ, եթե նա ասում է որևէ բան, որ նրանք կարծեն իր Աստված լինելը, նրանք պետք է ընդունեն այն որպես փոխաբերական իմաստ, որը չի նշանակում այն, ինչ հնչում է: Բացի այդ Հիսուսը պարզաբանում է, որ այն, ինչ նա ասաց հանդիսանում է, որ նա Աստծո Որդին է (Հովհաննես 10:36) Նա ասում է, որ եթե մյուսներին կարող են կոչել 'աստվածներ' նա չի հասկանում , թե նրանք ինչու են առարկում, երբ նա իրեն կոչում է Աստծո Որդի, որը նշանակում է, որ Աստված ընտրել է նրան և ուղերձով ուղարկել է մարդկանց:

Հատվածի պարզ իմաստը այնուհետ այն է, որ Հիսուսը չի հանդիսանում Աստված: Նա մեկն է, ում ընտրել է Աստված, այսինքն նա Մուսթաֆան է և նրան ուղարկել  է Աստված, այսինքն նա Աստծո մարգարեն է: Երբ նա իրեն Աստծո Որդի է կոչում , նա դրանից առավել ոչինչ ի նկատի չուներ:

Եվ, չնայած վերոհիշյալ հատվածի մանրակրկիտ ուսումնասիրության, ոմանք կարող են ըստ սովորույթի ժխտել տարբերակ 34-36 Հիսուսի ներկայացրած

բացատրությունը: Նրանք կարող են պնդել հեռացնել տարբերակ 30 իր կոնտեքստից դուրս և տալ այն գաղափարը, որ Հիսուսի կարծիքը սխալ է: Այնուհետ նրանք կարող են համաձայնության գալ Հրեաների հետ և չհամաձայնվել Հիսուսի խոսքերին: Ինչպես մենք կարող ենք տեսնել նմանատիպ վերաբերմունքը առաջնորդում է շփոթության:

Եթե նույնիսկ, մեկուսացվի տարբերակ 30 Հիսուսի խոսքերի իմաստը փոփոխելու համար, այն ոչ մի լուծում չի տա:Միայն կբարձրացնի ավելի շատ խնդիրներ: Հիսուսը չի կարող լինել մեկ և ինչպես Հայրը, քանի որ նա ասաց ինքն իրեն, որ Հայրը ավելի հզոր է, քան նա (Հովհաննես 14:28 )Հիսուսն ասաց, որ նա և Հայրը փաստացի երկուսն են( Հովհաննես 8:14-18) Եվ այդ ժամանակ ոչ ոք չէր տեսել Աստծուն, չնայած նրանք արդեն տեսել էին Հիսուսին (Հովհաննես Ա 4:12) Այս ամենի լավագույն լուծումն է վերադառնալ Հիսուսի ուսմունքին այդ դեպքում, դուք կգիտակցեք ճշմարտությունը և այն ձեզ ազատ կարձակի (Հովհաննես 8:31-32)

**«Մինչ Աբրահամը ես եմ»**

Հովհաննես 8:58 տարբերակը հանդիսանում է Աստվածաշնչի ամենաթյուրըմբռնելին: Որովհետև այս տարբերակի մեջ Հիսուսն ասում է «Մինչ Աբրահամը Ես եմ» երկու հետևանք, ոչ կարևոր և կեղծ, որոնք կազմվել են հիմք ունենալով հետևյալ հատվածը:Անկարևոր եզրակացությունը այն է, որ քանի որ Հիսուսը գոյություն է ունեցել մինչ Աբրահամը, նա գոյություն է ունեցել միշտ: Սա կանխակալ հասկացություն է, որը մարդիկ

պարտադրում են տեքստին: «Մինչ Աբրահամը» չի նշանակում «միշտ»: Ըստ Աստվածաշնչի Մելքիսեդիքը գոյություն է ունեցել մինչ Աբրահամը (Հրեաներ 7:3) Արդյո՞ք այդ նշանակում է, որ Մելքիսեդիքը Աստված է: Ակնհայտորեն, մենք չենք կարող արարածին Աստված ընդունել:

Կեղծ եզրակացությունը այն, որ Հիսուսը 'Ես եմ' ասելով, ասում էր Աստծո անունը, որը Աստված հայտնել էր Մովսեսին Ելք 3:14-15 մեջ:

Այս կետի շուրջ Աստվածաշունչը շփոթության մեջ է, որովհետև այն տալիս է Մովսեսին Աստծո կանչի երեք տարբերակ և երեքն էլ միմյանց հակազդում են: Լավագույնը, ինչ կարելի է ասել այն է, որ Աստծո անունը այնտեղ Եհովա է: Համեմատություն անց կացրեք երեք տարբերակների միջև.

1.Եհովական տարբերակը (Ելք 6:28- 7:7) ոչինչ չի ասում Աստծո հայտնության մասին, որովհետև Եհովական խմբագիրների համար, Եհովայի անունը արդեն հայտնի էր Իսրայելցիներին: Նրանք ասում են, որ այս անունը կիրառության մեջ է եղել Ենոշի, Ադամի թոռան ժամանակաշրջանից (Ծննդոց 4:26)

2.Քահանայական տարբերակը (Ելք 6:2-13) հակազդում է սրան ասելով, որ տվյալ անունը նախկինում հայտնի չի եղել (Ելք 6:2)

Այստեղ Աստծո հրամանը Մովսեսին հետևյալն է.

Այսպիսով ասա Իսրայելցիներին, «Ես Եհովան եմ…» (Ելք 6:6 ) և Մովսեսը սա կրկնեց նրանց (6:9)

3.Սակայն Էլոհական տարբերակի մեջ (Ելք 3:13-22) Աստծո հրահանգը Մովսեսին տարբեր է:

Ահա ինչ դուք պետք է ասեք Իսրայելցիներին. «Ես արդեն ուղարկել եմ ինձ ձեզ»: (Ելք 3:15)

Այստեղից երևում է, որ Աստծո անունը «Ես եմ», սակայն մանրակրկիտ ուսումնասիրությունից հետո ակնհայտ է, հետևյալ հատվածի մեջ էլոհիստական դպիրները փոխարինել են «Ես եմ» «Եհովայի» ,տրված միևնույն հրահանգի մեջ (Ելք 6:6)

Նույնիսկ, եթե Աստված իրոք, իր անունը հայտնի որպես «Ես եմ» ինչպես նշում է Ելք գլուխ 3 տարբերակ 15, այն դեռ ապացույց չէ, որ Հիսուսը իրեն է վերագրել «Ես եմ» անունը: Հիսուսը երբեք չի ասել, որ իր անունը «Ես եմ» է: Նրան մեջբերել են ասելով «Մինչ Աբրահամը, ես եմ»: (Հովհաննես 8:58) Եթե «Ես եմ» հանդիսանում է Հիսուսի անունը, ապա մենք պետք է ի վիճակի լինենք փոխարինել տվյալ հատվածի «Ես եմ» արտահայտությունը «Հիսուսի», քանի որ երկուսն էլ Հիսուսի անուններն են: Այնուհետ հատվածը կարելի է ընթերցել հետևյալ կերպ. «Մինչ Աբրահամը, Հիսուսն էր»: Սա, իհարկե անիմաստ է, որվհետև գաղափարը, որ Հիսուսը իրեն կոչել է «Ես եմ» տեքստի մեջ առկա չէ, այլ այն ինչ որ մեկի մեկնաբանությունն է, որը պարտադրել են տեքստին: Նկատի ունեցեք, որ մենք ոչ մի դժվարություն չենք ունենա փոխելու «Ես եմ» (Ելք 3:15) կամ «Աստծո» կամ «Եհովայի» հետ, ինչպես հետևյալը. Սա դուք

պետք է ասեք Իսրայելցիներին. «Աստված ինձ ուղարկել է ձեզ»: (Ելք 3:15)

Ահա ինչ պետք է դուք ասեք Իսրայելցիներին. «Եհովան ուղարկել է ինձ ձեզ»: (Ելք 3:15)

Մեկ այլ ուշագրավ խնդիրը այս է. Չորրորդ Ավետարանի հեղինակը երբեք հավատ չի ընծայել Հիսուսի Աստված լինելուն: Սա ապացույց է, որ Հիսուսը երբեք չի ասել, որ նա Աստված է: Այլապես, ինչպե՞ս էր հնարավոր, որ չորրորդ Ավետարանի հեղինակը տեղյակ չլիներ այդ մասին: Նա հավատում էր, որ Հայրը հանդիսանում է միակ ճշմարիտ Աստվածը և որ Հիսուսը Քրիստոսն է և Աստծո մարգարեն (տես Հովհաննես 17:3)

Բացի այդ, տարբերությունը, որը առկա է Աստվածաշնչի Հունական տարբերակի մեջ, կորել է Անգլերեն տարբերակներից: Հին Կտակարանի Յոթանասունական Հունական տարբերակի մեջ, «Ես եմ» արտահայտությունը թարգմանվել է հունարեն «հո օն» արտահայտությամբ: Եթե չորրորդ Կտակարանի հեղինակը ցականություն ունենար ընթերցողին ցույց տալ, որ Հիսուսը կրկնեց արտահայտությունը, նա անկասկած մեջ կբերեր Հիսուսին ասելով. «Մինչ Աբրահամը հո օն էր»: Սակայն նա չարեց այդ: Փոխարենը նա մեջ բերեց Հիսուսին ասելով. «Մինչ Աբրահամը, էգո իմի»: Նրա Հունական ձեռագրի ընթերցողները այնուհետ պետք է որ տեսնեյին, որ Հովհաննես 8:58 Հիսուսի հայտարարությունը տարբերվում է Ելք 3:15 Աստծո հայտարարությունից: Եվ իհարկե այս էր հանդիսանում չորրորդ Ավետարանի հեղինակի մտադրությունը:

Բացի այդ, Աստվածաշնչի ասորերեն տարբերակը, որը հանդիսանում է ամենաhին տարբերակներից մեկը, Հովհաննես 8:58 մեջ ասում է. «Մինչ Աբրահամը Ես էի»: Արդյո՞ք հեղինակի խոսքերը ենթարկվել են փոփոխության: Ինչպե՞ս ենք մենք կարող գիտակցել: Ենթադրենք սա է բնօրինակ արտահայտությունը, այդ դեպքում մնացածը, ովքեր իրենց ընդհանուր մատուցմամբ հանգիստ էին, Դատաստանի օրը հիասթափված կլինեն: Ինչու՞ մեր դեպքը չհանգեցնել Աստվածաշնչի ավելի պարզ տարբերակի – մեկի, որտեղ Հիսուսը ակնհայտորեն տարբերակում է իր և Աստծո միջև: Օրինակ, որտեղ Հիսուսը ասում է իր թշնամիներին. Դուք վճռել եք սպանել ինձ, մարդու, ով ասել է ձեզ ճշմարտությունը, որը Ես լսել եմ Աստծուց»: ( Հովհաննես 8:40)

Այդ դեպքում, ո՞վ է Հիսուսը: Մարդ, ով ասաց ճշմարտությունը, որը նա լսեց Աստծուց: Այլ կերպ, նա հանդիսանում է Աստծո առաքյալը: Երբ նմանատիպ պարզ հայտարարությունը տրվում է Հիսուսի շուրթերից, ինչու՞ հատվածների սակարկությունը, որոնք այդքան էլ պարզ չեն և որոնց փորձում են շրջել, որպեսզի հակառակ լինեն Հիսուսի ասած խոսքերին, առկա են այլ ակնհայտ տարբերակների մեջ:

Յուրաքանչյուրը, ով ցանկություն ունի իրեն համոզել, որ Հիսուսը Աստված է, պետք է փնտրի Աստվածաշնչի ավելի պարզ վկայություն, որպեսզի ցույց տա Հիսուսի Աստված լինելը: Սակայն ակնհայտ վկայությունը հակառակն է: Աստվածաշունչը կրկին և կրկին ուսուցանում է, որ Հիսուսը Աստված չէ, այլ Աստծո Ծառա: (Մատթեոս 12:18)

Հովհաննեսին հաջորդող  գլուխ 9 տարբերակ 35 մեջ, Հիսուսը հայտնում է, որ նա հանդիսանում է մարդու որդի: (Վերանայված Տիպական Տարբերակ) Եվ յուրաքանչյուրը, ով գիտի Աստվածաշունչը ինչպես Իսրայելցիները, ում հետ խոսել է Հիսուսը, պետք է տեղյկա լինի, որ մարդու որդին չի կարող Աստված լինել: Աստվածաշունչը հայտնում է, որ Աստված չի կարող լինել մարդ կամ մարդու որդի (Թվեր 23:19)

Ինչպե՞ս է կարելի նրան մաքուր կոչել, եթե նա ծնվել է կնոջից: Ահա նույնիսկ լուսինը և  ինչ  չի  երևում , այո, աստղերը մաքուր չեն նրա առջև: Որքա՞ն փոքր է մարդ, որը որդ է:Եվ մարդու որդի, որը որդ է: (Յոբ 25:4-6 )

**«Կույսը Ծնունդ Կտա»**

Եսայի 7:14  հանդիսանում է Աստվածաշնչի ամենաթյուրըմբռնելի տարբերակը: Այս հատվածը մի աղավաղված թարգմանության մեջ ընթերցում է. «կույսը կհղիանա և որդի կծնի և կկոչի Էմմանուիլ»: Էմմանուիլ նշանակում է « Աստված մեզ հետ է » տես Ավետիսի Աստվածաշունչը էջ. 673 Այժմ, շնոհիվ Մատթեոս գլուխ 1 տարբերակ 23 այս մարգարեությունը վերաբերում է Հիսուսին, և սխալմամբ հավատում են, որ այս  Հիսուսի Աստված լինելու ապացույցն է:

Առաջին հերթին Մատթեոսը երբեք ցանկություն չի ունեցել պատկերել Հիսուսին որպես Աստված: Հիսուսի աստվածայնության հավատքը ձևավորվել է Մատթեոսի Ավետարանից բավական հետո: Մատթեոսի Ավետարանը

ամեն կողմից ապացուցում է, որ Հիսուսը Աստծո ծառան է (Մատթեոս 12:18; 24:36;27:46 ):

Երկրորդ հերթին Աստվածաշնչի մեջ անհատին տրված անունը ապացույց չէ, որ նա Աստված է:« «Եղիա» նշանակում է Եհովա Աստված»: Արդյո՞ք այդ ապացուցում է, որ Եղիան հանդիսանում է Եհովա Աստվածը: Անշուշտ ոչ: Նմանապես, Էմմանուիլ անունը չի ապացուցում, որ Հիսուսը Աստված է մեզ հետ: Ոչ էլ «Էլիհու», որը նշանակում է Աստված, ապացույց է, որ էլիհուն ինքը Աստվածն է (տես Թագավորաց Ա 1:1)

Երրորդ, չնայած մարգարեությունը արված է Մատթեոս 1:23 որը անուղղակի վերաբերվում է Հիսուսին, Եսայի 7:14 մարգարեությունը անշուշտ ուղղակի վերաբերվում է երեխայի, ով ծնվել է մարգարե Եսայու կենդանության օրոք: Այդ երեխային կոչել են «Էմմանուիլ», որը նշանակում է «Աստված մեզ հետ է» և նա հանդիսանում է Աստծո նշանը, որը տրվել է Ահազ Արքային, որ Աստված կօգնի նրան և նրա ժողովրդին: Եսայի գլուխ 7 մեջ Աստված Արքա Ահազին խոստանում է, որ մինչ երեխան բավարար մեծանա, տարբերելու ճիշտը սխալից, թշնամի արքաները Աստծո օգնությամբ պարտության կմատնվեն: Ամբողջական իմաստը հասկանալու համար, դուք պետք է ընթերցեք ամբողջ գլուխը:

Սխալ է դուրս հանել կոնտեքստի մեկ տարբերակը և այլ իմաստ տալ դրան: Իրոք, երեխան ծնվում է և Աստված նրան կոչում է Էմմանուիլ (Եսայի 8:8) Եթե Արքա Ահազը ստիպված էր սպասել յոթ հարյուր տարի Հիսուսի ծնունդին, մինչ Աստծո օգնությունը, նա և նրա ժողովուրդը

մահացած պետք է լինեն մինչ այդ: Ապա, ո՞րն է նման խոստովանության իմաստը: Խոստումը ուներ ժամանակավոր լրացում:Մարգարեությունը չէր վերաբերվում Հիսուսին, ով պետք է ծնվեր հարյուրավոր տարիներ անց, սակայն երեխայի, ով ծնվել էր Արքա Աhազի ժամանակաշրջանում:

Մեկ այլ կարևոր կետ է նաև այն, որ երեխան, ում մասին խոսում է Եսային, սկզբում ի վիճակի չի լինի տարբերել բարին և չարը: Նրանք, ովքեր ասում են, որ Հիսուսն է այդ երեխան, չպետք է շրջվեն և ասեն, որ Հիսուսը Աստված է, որովհետև երբեք չի եղել և լինի ժամանակ, երբ Աստված չի գիտակցի բարու և չարի տարբերությունը:

Մատթեոսը սխալմամբ վերագրում է այս մարգարեությունը Հիսուսին, որովհետև Հիսուսը ծնվել է կույսից և տեքստը խոսում է ծնունդ տվող կույսի մասին: Մատթեոսը հենվում էր Աստվածաշնչի Հունարեն Յոթանասունական տարբերակին, որտեղ Եսայի 7:14 մեջ կիրառվում է հունարեն «parthenos» բառը, որը նշանակում է «կույս»: Սակայն Եսայու բնօրինակը եբրայերեն է: Որպեսզի գտնել Եսայու իմաստը, անհրաժեշտ է ետ գնալ դեպի բնօրինակ լեզուն, այնուհետ անդրադառնալ միայն թարգմանությանը: Եբրայերեն ձեռագրերը «կույս» բառի փոխարեն ունեն եբրայերեն «almah» բառը, որը նշանակում է «ամուսնական տարիքի երիտասարդ կին»: Եթե Եսայու հեղինակը ցանկություն ուներ ասել «կույս» նա պետք է կիրառեր եբրայերեն «bethulah» բառը, որը նշանակում է «կույս»: Սակայն նա չի արել դա: Այդ իսկ պատճառով Աստվածաշնչի Վերանայված տիպական Տարբերակը և

շատ այլ տարբերակներ «կույսի» փոխարեն ընթերցում են «երիտասարդ կին»:

Հիսուսը իրոք, ծնվել է կույսից և Աստվածաշունչը և Ղուրանը հաստատում են դա: Սակայն, Եսայի գլուխ 7 տարբերակ 14 չի խոսում կուսական ծնունդի մասին և չի վերաբերվում Հիսուսին: Աստվածաշունչը Հիսուսին երբեք ''էմմանուիլ'' չի կոչել: Հրեշտակը նրան անունը հայտնել է «Հիսուս» (Ղուկաս 1:31)

**«Նա, ով տեսել է ինձ, տեսել է Հորը»**

Հովհաննես 14:9 մեջ է բերում Հիսուսին (Խ.Ա.Ո.Ն) ասելով. «Նա ով տեսել է ինձ, տեսել է Հորը»: Հաճախ սա սխալ են ընկալում, իմաստավորելով, որ Հիսուսը Աստված է: Սակայն Հիսուսը պարզորոշ ասել է, որ ոչ ոք երբևէ չի տեսել Աստծուն (Հովհաննես 5:37) Նրանք, ովքեր ասում են, որ Հիսուսը Աստված է, հակազդում են Հիսուսի խոսքերին: Եթե Հիսուսը հանդիսանում էր Աստված, ինչու՞ էր նա իրեն նայող մարդկանց ասում, որ նրանք երբեք չեն տեսել Աստծուն: Եվ ինչու՞ Աստվածաշնչի Հովհաննեսի 1 Նամակի մեջ, որը գրվել է Հիսուսի համբարձումից յոթանասուն տարի անց, ասվում, որ ոչ ոք երբեք չի տեսել Աստծուն (Հովհաննես Ա 4:12 ) չնայած նա տեղյակ էր, որ Հիսուսին տեսել են ամբոխներ: Հովհաննես 14:9 իմաստը այն չէ, որ Հիսուսը Աստված է, այլ որ ճանաչելով Հիսուսին, անհատը ճանաչում է Աստծուն, քանի որ Հիսուսը ուսուցանում է Աստծո մասին: Այս իմաստը հաստատել է Հովհաննես 1:18, որտեղ հեղինակը ասում է, որ ոչ ոք երբեք չի տեսել Աստծուն, սակայն, Հիսուսը մարդկանց հայտնի է դարձրել Աստծուն: Միևնույն Ավետարանի գլուխ 17

տարբերակ 3 մեջ, Հիսուսը հայտնել է, որ հավերժ կյանք նշանակում է գիտակցել, որ Հայրը, ում երկրպագում էր Հիսուսը, հանդիսանում է միակ ճշմարիտ Աստվածը և որ Հիսուսը Մեսսիան է, ում Աստվածն էր ուղարկել:

**Նա Մարմին էր**

Հաճախ մեջ են բերում Տիմոթեոս Ա, որպեսզի ցույց տան, որ «Աստված մարմին է»: Այսպես այն ավելի ուշ հայտնվեց Աստվածաշնչի ձեռագրերի մեջ, և ավելի վաղ և ավելի վստահելի ձեռագրերի մեջ, (Հատկանշական Սինայական Կողեքսը և Վատիկանի Կողեքսը, որը պարզորոշ վերաբերվում է Հիսուսին): Այս հատվածը ցույց չի տալիս , որ Հիսուսը Աստված էր: Այն արտացոլում է Պողոսի համոզմունքը, որ Հիսուսը մինչ մարմնավորվելը արարած էր, որը ավելի բարձր էր, քան մարդը և ավելի ցածր, քան Աստվածը: «Գլուխը ,եթե յուրաքանչյուր մարդ Քրիստոս է, հանդիսանում է Աստված» գրում է Պողոսը Կորնթացիներ Ա 11:3 մեջ:

**Հզոր Աստված, Հավերժ Հայր**

Եսայի 9:6 խոսում է մեկի մասին, ում կկոչեն Հոյակապ, Խորհրդական, Հզոր Աստված, Հավերժ Հայր, Խաղաղության Արքայազն: Մեզ հաճախ ասում են, որ սա Հիսուսի մարգարեությունն է և որ այն ապացույց է հանդիսանում, որ Հիսուսը Աստված է: Սակայն խնդիրը, որը ներկայացնում է այս մարգարեությունը, ոչ մի ազնիվ մարդ չի կարող անտեսել: Եթե այն վերցնենք բառացիորեն, ապա Հիսուսը հանդիսանում է «Հավերժ Հայր»: Սակայն, Հիսուսը պարզորոշ ուսուցանել է, որ նա չի հանդիսանում

Հավերժ Հայր: Ըստ Մատթեոսի, Հիսուսը երկրի վրա գտնվելու ընթացքում հայտնեց. Ոչ ոքի երկրի վրա մի կոչեք «հայր», քանի որ դուք ունեք մեկ հայր, և նա երկնքում է: (Մատթեոս 23:9 Նոր միջազգային Տարբերակ)

Եթե Հիսուսը չէր հանդիսանում «Հավերժ Հայր» կամ «Ամենազոր Աստված», այդ դեպքում մենք հատվածը բառացիորեն դիտում ենք սխալ, որը հակազդում է Հիսուսի պարզ ուսմունքին, կամ մենք այն դիտում ենք փոխաբերական իմաստով, որտեղ «Հավերժ Հայր» իրոք, չի նշանակում «Հավերժ Հայր» և «Հզոր Աստված» իրոք, չի նշանակում «Հզոր Աստված»:

## ԱՐԴՅՈ՞Ք ՀԻՍՈՒՍԸ ՄԻԱԺԱՄԱՆԱԿ ՀԱՆԴԻՍԱՆՈՒՄ ԷՐ ԿԱՏԱՐՅԱԼ ԱՍՏՎԱԾ և ԿԱՏԱՐՅԱԼ ՄԱՐԴ

Ըստ Ուղղափառ Քրիստոնյա հավատքի, Հիսուսը միաժամանակ հանդիսանում էր կատարյալ մարդ և կատարյալ Աստված: Շատ Քրիստոնյաների սիրելի Աթանեսյան դավանանքի, այս հավատքը անհրաժեշտ է փրկության համար: Ժամանակակից Քրիստոնյա գիտնականները ժխտում են այս գաղափարը ոչ միայն դժվար ընկալման պատճառով, այլ որովհետև այն հնարավոր չէ իմաստայնորեն արտահայտել: Ուսմունքը հնարավոր չէ հայտարարել ամեն կերպ, որը զուրկ է հակասություններից: Հիսուսի համար անհնար է միաժամանակ հանդիսանալ կատարյալ մարդ և կատարյալ Աստված, քանի որ այն կարող է նշանակել, որ նա միաժամանակ վերջավոր և անվերջ, սխալական և անսխալ է: Սա հնարավոր չէ: Ինչ հերքում է դավանանքը, բավականին էական է: Դավանանքը ձևավորվել է ի

պատասխան վաղ Քրիստոնեական խմբերի և այսպիսով ներառում է դրույթներ, որոնք ժխտում են այդ խմբերի հավատքները: Ի պատասխան Արիականների, ովքեր հավատք ընծայեցին, որ Հիսուսը Աստված չէ, Նիկիայի Ժողովը 325 թվականին որոշում կայացրեց, որ նա լիովին Աստված էր: Ի պատասխան Ապոլինարինցիների, ովքեր հավատք ընծայեցին, որ Հիսուսը Աստված էր, սակայն ոչ լիովին մարդ, Կոնստանտինոպոլիսի ժողովը 381 թվականին որոշեց, որ Հիսուսը կատարյալ մարդ էր: Այնուհետ հանդես եկավ Նեստորիականությունը, հավատք, որը սկիզբ առավ, երբ Նեստորիուսը ժխտեց Մարիամին «Աստծո Մայր» կոչել: Ըստ նրա, Մարիամը հանդիսանում էր միայն մարդ Հիսուսի մայրը: Սա նշանակեց, որ գոյություն ունեն երկու Քրիստոսներ. Մեկը աստվածային, մյուսը մարդկային: Ի հակադրություն Նեստորիուսի, Եփեսուսի ժողովը 431 թվականին, որոշեց, որ հնարավոր չէ առանձնացնել Հիսուսի երկու բնույթը: Հիսուսը ամենը գործել է մղվելով և մարդկային և աստվածային բնույթից: Նմանապես, ամենը ինչ տեղի ունեցավ նրա հետ, տեղի ունեցավ և մարդու և Աստծո հետ, որը և հանդիսանում էր նա: Ուստի Մարիամը երկուսին էլ ծնունդ տվեց, երկուսն էլ կնքեցին մահկանացուն խաչի վրա: Մեկ այլ ժողով, Քաղքեդոնի ժողովը, 451 թվականին ընդունեց դավանանքը որոշ ավարտուն հպումներով և Աթանասիական դավանանքը հայտարարեցին պաշտոնական եկեղեցական ուսմունք: Քրիստոնյաների մեծամասնությանը ծանոթ չէ դավանանքի մարնակրկիտ հետևանքները և ըստ իրենց կարծիքի, դավանանքը ձևավորվել է ժխտելու Հիսուսի տարբեր ուղիների

ընկալումը: Այս միտումը հանդիսանում է այն փաստի արդյունք, որ դավանանքի Հիսուսի բնորոշումը մարդկային ընկալումից վեր է: Կարելի է միայն կրկնել խոսքերը, սակայն հնարավոր չէ ընկալել պահանջվող համոզմունքի իմաստը: Ուստի, շատերը ուղղակի կրկնում են դավանանքը իրենց շուրթերով, սակայն իրենց մտածելակերպով շրջվել են Հիսուսի տեսակետներին, որոնք ավելի քիչ են ծանրաբեռնում ինտելեկտը, նույնիսկ չնայած Եկեղեցին դրանք հերետիկ է հայտարարել:

Ուղղափառ ուսմունքը տրամաբանորեն հնարավոր չէ: Ինչպես նշել է համեմատական կրոնի գիտնական, Հուսթոն Սմիքը, հնարավոր չէր լինի տրամաբանորեն անհնար համարել, եթե դավանքնը ասեր, որ Հիսուսը հանդիսանում է որոշ չափով աստվածային և որոշ չափով մարդկային: Սակայն սա է, որ ժխտում է դավանանքը: Ուղղափառ քրիստոնյաների համար Հիսուսը չի կարող ունենալ միայն մի քանի մարդկային հատկանիշներ, նա պետք է ունենա բոլորը: Նա պետք է լիովին մարդ լինի: Միևնույն ժամանակ, նա չի կարող ունենալ միայն մի քանի աստվածային հատկանիշներ; նա պետք է ունենա բոլորը: Նա պետք է լինի լիովին աստվածային: Սա հնարավոր չէ, որովհետև լիովին աստվածային լինելը նշանակում է, որ նա պետք է զերծ լինի մարդկային սահմանափակումներից: Եթե նա ունի միայն մեկ մարդկային սահմանափակում, ապա նա Աստված չի հանդիսանում: Սակայն, ըստ դավանանքի, նա ունի մարդկային բոլոր սահմանափակումները: Ապա, ինչպե՞ս է նա կարող Աստված լինել: Հուսթոն Սմիթը այս կոչում է կոպիտ հակասություն:

